## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։*

*Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։*

*Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ 1974

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» —теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԴԵՊԻ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐ՝ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ, ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

*Կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցությունը մեր ժամանակի ամենանշանավոր իրադարձություններից մեկն է։ Նրա նշանակությունն ու ներգործուն ուժը պայմանավորված են այն բանով, որ նա մարքս-լենինյան դիրքերից որոշեց խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար ժամանակակից մարդկության միջազգային ավանգարդի հետագա պայքարի հիմնական ուղղությունները պատմական այն նվաճումների հիման վրա, որ մինչ այդ արդեն ձեռք էին բերել սոցիալիստական երկրները, միջազգային բանվորական և ազգային ազատագրական շարժումը։*

*Ելույթ ունենալով ՍՄԿԿ XXIV համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Խորհրդակցությունը առաջընթաց խոշոր քայլ հանդիսացավ կոմունիստների միջազգային միասնության ամրապնդման և հակաիմպերիալիստական բոլոր ուժերի համախմբման ճանապարհին։ Նա շատ բան արեց մարքս-լենինյան տեսության մի շարք կարևոր դրույթներ արդի իրադրության համեմատ զարգացնելու համար։ Հաստատվեց, որ եղբայրական կուսակցությունների շփման այդօրինակ առավել լայն և ներկայացուցչական ձևը համապատասխանում է կոմունիստական շարժման պահանջմունքներին՝ որպես ինտերնացիոնալ ուժի»։ Այն դերի շնորհիվ, որ կոմունիստական շարժումը կատարում է որպես աշխարհում ամենաազդեցիկ քաղաքական ուժ, 1969 թվականի խորհրդակցությունը անխզելիորեն կապված է համաշխարհային իրադրության այն խոր տեղաշարժերի հետ, որոնցով նշանավորվել է վերջին հինգ տարին։*

*Այդ տարիներին տեղի ունեցած փոփոխությունները հաստատեցին ամենից առաջ ժամանակակից հասարակական զարգացման այն վերլուծության ճշտությունը, որ պարունակում են խորհրդակցության փաստաթղթերն ու նյութերը։ Դասակարգային պայքարի պրակտիկան, անցած հինգ տարվա քաղաքական փորձը ապացուցեցին նաև իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում միասնական գործողությունների մասին խորհրդակցության առաջադրած ծրագրի հիմնավորվածությունն ու ռեալիզմը։*

*Այսպիսով, կոմունիստական շարժումը նորից ցուցադրեց հասարակական զարգացման միակ ճիշտ տեսության, իր հեղափոխական մեծ ուսմունքի՝ մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական ուժը, ապացուցեց նրա նշած քաղաքական գծի ճշմարտացիությունը և մարքս-լենինյան կուսակցությունների ընդունակությունը՝ կենսագործելու այդ գիծը մասսաների մեջ տարվող կազմակերպական-քաղաքական աշխատանքով։ 1969 թվականի խորհրդակցությունից հետո ձեռք բերված պատմական հաջողությունները նոր ուժով հաստատեցին ու ամրապնդեցին կոմունիստական շարժման ավանգարդային դերը ժամանակակից հասարակական զարգացման մեջ, սոցիալական առաջընթացի, ամբողջ աշխատավոր մարդկության արմատական շահերի գործի գաղափարական ոգեշնչողի, քաղաքական ղեկավարի ու ամենաակտիվ մարտիկի դերը։*

*Կոմունիստական շարժումը իրավամբ հպարտանում է, որ խորհրդակցու-*

թյունից հետո աշխարհում տեղի ունեցած վիթխարի փոփոխությունները վճռական չափով սոցիալիստական համագործակցության, միջազգային բանվոր դասակարգի, ազգային ազատագրական շարժման, բոլոր հեղափոխական և առաջադիմական ուժերի կոլեկտիվ ջանքերի արդյունք է, որ դա ամենից առաջ սոցիալիզմի, նրա հաջողությունների, նրա հզորության, նրա օրինակի ներգործության արդյունք է։

Օրակարգի հարց են դառնում նոր, ավելի պատասխանատու խնդիրներ։ Միաժամանակ, նշելով այդ խնդիրներն ու դրանց լուծման ուղիները, կոմունիստական շարժումը նորից ու նորից է դիմում իր պատմության այնպիսի մի խոշոր իրադարձության գնահատականին, ինչպիսին է 1969 թվականի խորհրդակցությունը, մանրազնին ուսումնասիրում է դրա գաղափարների իրականացման համար կատարված աշխատանքի փորձը, իր այսօրվա գործունեության մեջ ղեկավարվում է դրանցով։

Հետևողականորեն ելնելով արդի համաշխարհային դրության այն բնութագրից, որ պարունակվում է 1957 և 1960 թվականների միջազգային խորհրդակցությունների փաստաթղթերում, 1969 թվականի խորհրդակցության մասնակիցները արեցին մի ամբողջ շարք հետևություններ, որոնք այսօր էլ սկզբունքային նշանակություն ունեն համաշխարհային դասակարգային պայքարի ընթացքն ու հեռանկարները հասկանալու համար։

Դրանք վերաբերում են ամենից առաջ մեր ժամանակի հեղափոխական ուժերի բնութագրմանը, որոնց մեջ ամենակարևոր դերը ավելի ու ավելի վստահորեն կատարում է համաշխարհային սոցիալիստական սիստեմը, որը հանդես է գալիս որպես հակաիմպերիալիստական պայքարի գլխավոր ուժ։

Բանվորական շարժումը կապիտալի երկրներում գնալով ավելի վճռականորեն է ուղղվում պետական-մոնոպոլիստական տիրապետության ամբողջ սիստեմի դեմ։ Բանվոր դասակարգը հանդես է գալիս որպես խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալական առաջընթացի համար պայքարող բոլոր ուժերի ձգողության կենտրոն։

Նշելով, որ գաղութային սիստեմի փլուզումը էականորեն թուլացրել է իմպերիալիզմի դիրքերը, 1969 թվականի խորհրդակցությունը հետևություն արեց, որ ազգային ազատագրական շարժման դերը համաշխարհային հեղափոխական պրոցեսում շարունակում է աճել և Ասիայի ու Աֆրիկայի շատ երկրներում այն թևակոխել է նոր փուլ։

Հակաիմպերիալիստական պայքարի վերելքի կոնկրետ հնարավորություններն ու պայմանները ճշտորեն բնորոշելու հետ միաժամանակ, խորհրդակցությունը տվեց արդի հեղափոխական պրոցեսի բոլոր ուժերի ու հոսանքների միասնության հարցի խոր վերլուծությունը, համոզիչ կերպով հիմնավորեց նրա կենսական անհրաժեշտությունը և ցույց տվեց նրա հետագա ամրապնդման առավել հեռանկարային ուղիները, մշակելով միասնական հակաիմպերիալիստական գործողությունների լայն պլատֆորմը։

Սկզբունքային նշանակություն ունեն նաև ժամանակակից իմպերիալիզմի էության գնահատականը, պատմական նախաձեռնությունը կորցնելու, ժամանակակից աշխարհի զարգացումը ետ շրջելու նրա անընդունակության մասին հետևությունը, որ պարունակում են 1969 թվականի խորհրդակցության փաստաթղթերը։ Իմպերիալիզմը, որի շահագործողական և ագրեսիվ բնույթը մնացել է անփոփոխ, ստիպված է համաշխարհային սոցիալիզմի հաջողությունների ազդեցության տակ հարմարվել ստեղծված համաշխարհային իրադրությանը, մշակել քաղաքական այլ գիծ, որը ուղղված է ավելի ճկուն մեթոդների օգնությամբ իր դասակարգային նպատակներին հասնելուն։ Այդ գիծը, ըստ էության, ռեակցիոն է։ Դա սոցիալական ռեանշի, պատմականորեն դատապարտված դիրքերը պահպանելու, անողոքաբար աճող ներքին հակասությունները լուծելու ուտոպիական ստրատեգիան է։ Հարկավոր է ընդգծել, որ ժամանակակից կապիտալիզմի հակասությունների, այդ թվում և գիտատեխնիկական հեղափոխության ծնած հակասությունների ամբողջ կոմպլեքսի բնութագիրը, որ տրված է խորհրդակցության փաստաթղթերում, մարքս-լենինյան մտքի կարևոր նվա-



ճումներից մեկն է։ Այդ բնութագիրը առանձնապես նշանակալի է այն բանով, որ նա հիմնվում է կապիտալիզմի զարգացման նոր երևույթների ու պրոցեսների վերլուծության վրա, հենց այն երևույթների ու պրոցեսների, որոնցով սպեկուլյացիա են անում բուրժուական ջատագովները, կապիտալիզմին կանխագուշակելով «երկրորդ երիտասարդություն»։ Խորհրդակցությունից հետո տեղի ունեցած իրադարձությունների ընթացքը պսակազերծ է անում ու մերկացնում նման սպեկուլյացիաները։

Համաշխարհային ասպարեզում դասակարգային ուժերի հարաբերակցության ստեղծագործական, մարքս-լենինյան վերլուծությունը, որ տվել է կոմունիստական շարժումը հինգ տարի առաջ, խորհրդակցությանը հնարավորություն տվեց մշակելու հակաիմպերիալիստական ուժերի միասնական գործողությունների լայն ու ներգործուն ծրագիր։

Առաջադրելով այդ ծրագիրը, որը արտացոլում է այն պայմանների բազմազանությունը, որոնցում գործում են հակաիմպերիալիստական շարժման տարբեր ջոկատները, կոմունիստները ելնում էին այն բանից, որ հեղափոխական ու առաջադիմական ուժերը ունեն հարաճուն հնարավորություններ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում առաջ ընթանալու համար։ Կոմունիստները համոզմունք հայտնեցին, որ «անհնար է վերջ տալ իմպերիալիստական ագրեսիայի քաղաքականությանը, ընդմիշտ վերացնել գաղութատիրությունն ու նեոգաղութատիրությունը, արմատախիլ անել ֆաշիզմն ու ռասայական ճնշումը՝ առանց վճռական պայքար մղելու ընդդեմ մոնոպոլիստական կապիտալի իշխանության, հանուն այնպիսի դեմոկրատական պահանջների, որոնց իրագործումը ամբողջությամբ թուլացնում է իմպերիալիզմի դիրքերը, խարխլում նրա տիրապետության հիմքերը։ Դրանով իսկ նպաստավոր պայմաններ են ստեղծվում բանվորական շարժման վերջնական նպատակներին հասնելու համար»։ Խորհրդակցության փաստաթղթերում բնութագրված են հակաիմպերիալիստական շարժման բոլոր ջոկատների ունեցած ռեզերվները, նրա ռեալ գործող և պոտենցիալ ուժերը, բացահայտված են այդ բոլոր ուժերի միասնության գաղափարի պարունակած հսկայական հնարավորությունները։

Հակաիմպերիալիստական պայքարի քաղաքական ծրագիրը, որ առաջադրել է խորհրդակցությունը, խորապես ռեալիստական փաստաթուղթ է, որը կարող է ծառայել որպես կոմունիստներին հատուկ ընդունակության օրինակ, թե ինչպես կարելի է գտնել գլխավոր օղակը քաղաքական խնդիրների շղթայում, դրա վրա կենտրոնացնել առավելագույն ուժեր և ամենից ավելի արդյունավետորեն նպաստել ընդհանուր առաջընթացին։ Մոսկվայի համաժողովի մասնակիցները նշեցին, որ արդի պայմաններում այդպիսի հիմնական օղակ է պայքարը հանուն խաղաղության, ժողովուրդների անվտանգության, ընդդեմ նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքի, իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունների ու ձգտումների։

Խորհրդակցությունից հետո անցած հինգ տարին կասկած չի թողնում, թե որքան արդյունավետ է եղել այդ խնդրի դրվածքը։ Դրա կատարման համար մղվող պայքարում խոր տեղաշարժեր են ձեռք բերվել համաշխարհային ասպարեզում։ ԳԴՀ-ի դուրս գալը միջազգային լայն ասպարեզ, Կուբայի միջազգային դիրքերի ամրապնդումը այն բանի վառ հաստատումն են, որ համաշխարհային սոցիալիզմի պատմական նվաճումները ընդհանուր ճանաչում են գտնում։ Խաղաղության և սոցիալիզմի ուժերի համառ պայքարի խոշորագույն նվաճումներից մեկը ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ պատերազմի դադարեցումն է Վիետնամում։ Ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծվել Մերձավոր Արևելքում իմպերիալիստական ագրեսիայի հետևանքները վերացնելու համար։ Այսպիսով, շատ բան է արվել ռազմական կոնֆլիկտների առավել վտանգավոր օջախները վերացնելու նպատակով։ Խաղաղ գոյակցության ուղեծրի մեջ այսօր մտել են մեծ ու փոքր բազմաթիվ պետություններ։ Շարունակվում է Եվրոպայում կայուն խաղաղության և արդյունավետ համագործակցության մայրցամաքը դարձնելու պրոցեսը։ Էականորեն բարելավվել են սովետա-ամերիկյան հարաբերությունները, որոնք համապատասխանում են երկու երկրների

և ամբողջ աշխարհի ժողովուրդների շահերին։ Միջազգային հարաբերություններում դրական տեղաշարժերը ամրապնդելու գործում հսկայական նշանակություն է ձեռք բերում այնպիսի մի գործոն, ինչպիսին է լայն հասարակայնության ակտիվացումը։ Ընդլայնվել է մասսայական բազան և ամրապնդվել խաղաղասեր ուժերի շարժումը, որոնց ներկայացուցչական վեհաժողովը հանդիսացավ նրանց համաշխարհային կոնգրեսը, որը կայացավ Մոսկվայում, 1973 թվականի հոկտեմբերին։ Միջազգային հարաբերությունների ամբողջ սիստեմի վճռական առողջացման համար մղվող պայքարում հաջողվել է, եթե խոսենք գլխավորի մասին, լրջորեն ամրապնդել խաղաղության և ժողովուրդների անվտանգության հիմքերը, թուլացնել միջուկային պատերազմի սպառնալիքը։

Դրա հետ մեկտեղ զգալիորեն ամրապնդվել են հեղափոխական և առաջադիմական ուժերի դիրքերը՝ ֆաշիզմի և ռազմա-օլիգարխիական ռեժիմների դեմ մղվող պայքարում, ի պաշտպանություն գաղութների ճնշված ժողովուրդների, բոլոր ձախ ուժերի արհմիութենական միասնության և քաղաքական միասնության համար մղվող պայքարում, որի մասին են վկայում, մասնավորապես, վերջին ժամանակների այնպիսի իրադարձություններ, ինչպիսիք են Ֆրանսիայում տեղի ունեցած ընտրությունների և Իտալիայում անցկացված հանրաքվեի արդյունքները։ Այդ կապակցությամբ առանձնահատուկ տեղ է գրավում հակաֆաշիստական, դեմոկրատական հեղափոխությունը Պորտուգալիայում, ժողովրդի լայն խավերի շահերն արտահայտող առաջադիմական ուժերի անցումը իշխանության գլուխ։

Բարձր գնահատելով 1969 թվականի խորհրդակցության առաջադրած ծրագրի իրականացման արդյունքները, կոմունիստները ամենևին հակված չեն թերագնահատելու այն դժվարությունները, որոնք հաղթահարվել են և դեռ հարկ է լինելու հաղթահարել իմպերիալիզմի նման վտանգավոր ու նենգ հակառակորդի դեմ մղվող պայքարում։ Իբրև իմպերիալիզմի գործակիցներ, իսկ երբեմն նաև նրա անմիջական դաշնակիցներ հանդես են գալիս բոլոր երանգների օպորտունիստները և ամենից առաջ մաոիստական պառակտիչները։ Ներկայիս չին ղեկավարները համաշխարհային քաղաքականության մեջ փաստորեն միանում են իմպերիալիզմի առավել ագրեսիվ ուժերի հետ, պայքարի սուր ծայրը ուղղում են լարվածության թուլացման դեմ, խաղաղության դեմ, վարում են համաշխարհային սոցիալիզմը, կոմունիստական շարժումը քայքայելու կուրս, վնաս հասցնում բոլոր ժողովուրդների շահերին։

Այդ տարիների իրադարձությունների ամբողջ բազմազանությամբ և նույնիսկ հակասականությամբ հանդերձ, համաշխարհային զարգացման ընդհանուր ուղղությունը որոշվում էր և որոշվում է դասակարգային ուժերի հարաբերակցության հետագա փոփոխմամբ՝ հօգուտ սոցիալիզմի, ի վնաս իմպերիալիզմի։

Ժամանակակից հեղափոխական պրոցեսի առաջատար ուժի՝ համաշխարհային սոցիալիզմի ամրապնդումը իր արտահայտությունն է գտնում ամենից առաջ նրա տնտեսական հզորության աճի մեջ։ Տնտեսական աճի տեմպերով պահպանելով անվերապահ գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ, սոցիալիզմը գնալով ավելի վստահորեն է դրսևորում իր առավելությունները որպես պլանային, համամասնորեն ու կայուն զարգացող էկոնոմիկա, բացահայտում հասարակական արտադրության որակական կատարելագործման իր հիրավի անսպառ ռեզերվները, ներկայումս տեղի ունեցող գիտատեխնիկական հեղափոխությունը ամբողջ հասարակության շահերի համար օգտագործելու իր հնարավորությունները։ Ինչպես վկայում է սոցիալիստական երկրների և ամենից առաջ Սովետական Միության փորձը, տնտեսական աճը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը սոցիալիզմի ամբողջ հասարակական զարգացման հիմքն է ու անբաժան մասը, որը նշվել է աչքի ընկնող նվաճումներով սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման, հասարակության միասնության ամրապնդման գործում, այն կազմող դասակարգային և սոցիալական խմբերի մերձեցման, սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքի



ամրապնդման, ժողովուրդների կուլտուրայի, հոգևոր կյանքի ծաղկման, հասարակության բոլոր անդամների նյութական ու հոգևոր շահերի հարաճուն բավարարման գործում։

Ձգտելով եղբայրական երկրների ազգային և ինտերնացիոնալ շահերի օրգանական միավորման, համաշխարհային սոցիալիզմը այդ տարիներին որակապես կարևոր քայլ է արել ամբողջ սոցիալիստական համագործակցության համախմբվածությունն ամրապնդելու ասպարեզում։ Այժմ սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կոմպլեքսային ծրագրի վրա հենվող Տնտեսական փոխօգնության խորհրդի գործունեությունը, եղբայրական քաղաքական համագործակցության հստակ մեխանիզմը նպաստեցին սոցիալիստական համագործակցության հեղինակության ու ազդեցության վիթխարի աճին։ Զարգացած սոցիալիզմի կառուցումը և կոմունիստական շինարարության հաջողությունները ՍՍՀՄ-ում, զարգացած սոցիալիստական հասարակարգի ստեղծումը եղբայրական մյուս երկրներում, ամբողջ սոցիալիստական համագործակցության համախմբվածության ու միասնության ամրապնդումը վկայում են, որ համաշխարհային սոցիալիզմը թևակոխել է պատմական մի նոր փուլ, երբ է՛լ ավելի են աճում նրա ռեալ հզորությունն ու միջազգային հեղինակությունը, նրա ձգողական ուժը, համաշխարհային զարգացման ամբողջ ընթացքի վրա ազդեցություն գործելու նրա հնարավորությունները։

Կոմունիստները իրենց ինտերնացիոնալ վեհ պարտքը տեսնում են այն բանում, որ ռեալ սոցիալիզմի մասին, համաշխարհային հասարակական առաջընթացի, իսկական մարդկային հասարակարգ ստեղծելու ճանապարհին նրա պատմական նվաճումների մասին ճշմարտությունը դառնա ամենալայն զանգվածների սեփականությունը, որ իմպերիալիզմի դեմ պայքարող մարտիկները ո՛ր տեղամասերում էլ գործելիս լինեն, պարզ գիտակցեն համաշխարհային սոցիալիզմի ճշմարիտ ուժը, համաշխարհային դասակարգային հակամարտության ընթացքի վրա նրա ներգործության խորությունը։

Վերջին տարիներին էական տեղաշարժեր են կատարվել նաև կապիտալիստական երկրներում։ Անցած հինգ տարին դարձավ բուրժուական հասարակության բոլոր հակասությունները մերկացրած դասակարգային պայքարի հզոր վերելքի ժամանակաշրջան, որն ակնհայտորեն արտահայտվեց աշխատավորների գործադուլային շարժման աճի մեջ, կառավարող շրջանների քաղաքականության դեմ, բուրժուական իշխանության ավանդական ինստիտուտների դեմ բողոքի մասսայական ելույթների աճի մեջ։ Այդ ժամանակաշրջանի տարբերիչ գիծն է դասակարգային պայքարի սոցիալական բազայի զգալի ընդլայնումը, վարձու աշխատանքի բանակի աճը, սոցիալական նոր խավերի, ամենից առաջ մտավոր աշխատանքի մարդկանց ներգրավումը այդ պայքարի մեջ։ Այս պրոցեսները ուղեկցվում էին մասսաների աննախադեպ քաղաքական ակտիվացմամբ, մասսայական պայքարի ընդհանուր մակարդակի բարձրացմամբ, որը, ինչպես խորաթափանց կերպով նշել է 1969 թվականի խորհրդակցությունը, ավելի հստակորեն է ուղղվում անմիջականորեն մոնոպոլիստական կապիտալի գերիշխանության սիստեմի դեմ, նրա քաղաքական իշխանության դեմ։ Այդ պայմաններում շեշտակիորեն բարձրանում է աշխատավորների սոցիալական ելույթների քաղաքական նշանակությունը, որը շատ բաներում գաղափարաքաղաքական նոր կլիմա է ստեղծում բանվորական և համադեմոկրատական շարժման մեջ, կլիմա, որը գնալով ավելի շատ է բնորոշվում ձախ, հեղափոխական տենդենցների ու տրամադրությունների ուժեղացմամբ։ Հենց այդ հիմքի վրա էլ շոշափելի հաջողություններ են ձեռք բերվել ձախ ուժերի համախմբման գործում՝ ինչպես ազգային, այնպես էլ միջազգային մասշտաբով։

Այս տարիներին աճել են կոմունիստների հեղինակությունն ու ազդեցությունը. նրանք գնալով ավելի հաջողությամբ են լուծում իրենց կուսակցությունները իրենց երկրների քաղաքական առաջատար ուժ դարձնելու խնդիրը։ Կոմկուսակցությունները մեծ աշխատանք են կատարել՝ ճշտելու համար այն կոնկրետ խնդիրները, որոնց լուծումը տանում է դեպի կոմունիստական շարժման ծրագրային նպատակների իրականացում, դեպի մասսաների ավելի լայն

ներգրավում գործողությունների մեջ, որոնք նրանց մոտեցնում են քաղաքական իշխանության համար պայքարին։ Այդ նվաճումները անհնար կլինեին առանց վճռական պայքար մղելու ռևիզիոնիզմի և բանվորական շարժման վրա նրա ազդեցության դեմ, ամենից առաջ, սեփական շարքերում օպորտունիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ։ Այս իրադրության մեջ աճում է հակակոմունիզմի և դասակարգային համագործակցության քաղաքականության ու գաղափարախոսության դեմ պայքարի խնդիրների ծավալը։

Իմպերիալիզմի և ներքին ռեակցիայի դեմ մղվող դժվարին պայքարում նորանոր հաղթանակներ են ձեռք բերել ազգային ազատագրության ուժերը։ Խորհրդակցությունից հետո անցած տարիներին աշխարհում առաջացան ութ նոր երիտասարդ ազգային պետություններ։ Մահացու հարված հասցվեց պորտուգալական գաղութային կայսրությանը։ Ամրապնդվել ու իրենց արդյունավետությունն են ապացուցել ազգային ազատագրական շարժման ինտերնացիոնալ համերաշխության կապերը համաշխարհային սոցիալիզմի, բոլոր հեղափոխական ու դեմոկրատական ուժերի հետ։

Գնալով ավելի է խորանում ազգային ազատագրական պայքարի սոցիալական բովանդակությունը. այդ շարժումը շատ երկրներում գործնականորեն սկսել է վերաճել ինչպես ֆեոդալական, այնպես էլ կապիտալիստական շահագործողական հարաբերությունների դեմ մղվող պայքարի։ Սոցիալ-տնտեսական վերափոխումների խորացման գործում շարունակում են կարևոր դեր կատարել առաջադիմական ռեժիմներ ունեցող երկրները։ Իսկական անկախության, գաղութատերերի տիրապետության ծնած հետամնացության հաղթահարման համար մղվող պայքարում զարգացող երկրները գնալով ավելի սերտ ու գործնական համագործակցություն են հաստատում միմյանց հետ։

Նման պայմաններում խոր փոփոխություններ են տեղի ունենում այդ երկրների ներսում. ուժեղանում է սոցիալական շերտավորումը, սրվում է բանվոր դասակարգի, գյուղացիության, դեմոկրատական մյուս ուժերի կոնֆլիկտը իմպերիալիզմի և ներքին ռեակցիայի հետ։ Ամենուրեք աճում է երիտասարդ պետությունների հայրենասիրաբար տրամադրված հասարակայնության ձգտումը դեպի սոցիալիստական գաղափարները։

Հեղափոխական ուժերի դասակարգային հակառակորդի լագերում այդ տարիներին տեղի ունեցած իրադարձությունների ընթացքը հիմք է տալիս խոսելու կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երրորդ էտապի զարգացման մեջ կատարվող որակական տեղաշարժի մասին։ Ինֆլյացիայի շեշտակի սրումը, որը զուգորդվում է գործազրկության աճի հետ, էներգետիկ և էկոլոգիական ճգնաժամերը, վալյուտային և առևտրական ընդհարումները, միլիտարիզմի բռնությունը և տնտեսական զարգացման հիվանդագին անհամաչափությունները, ինչպես, օրինակ, ամբողջ շրջանների և անգամ երկրների անշեղորեն աճող աղքատությունն ու հետամնացությունը, միջիմպերիալիստական հակասությունների և իմպերիալիստական «կենտրոնի» ու նրա նախկին գաղութային «պերիֆերիայի» հակասությունների սրումը, վերջապես, սոցիալ-քաղաքական ճգնաժամերը, որոնք մեկը մյուսի հետևից ցնցում են կապիտալի երկրները, այս ամենը վկայում է պետական-մոնոպոլիստական ամբողջ սիստեմի ապրած ճգնաժամի մասին։ Կապիտալիզմի տնտեսական բազայի ճգնաժամի հետ անխզելի կապի մեջ են գտնվում այն պրոցեսները, որոնք անմիջականորեն շոշափում են իմպերիալիզմի քաղաքական սիստեմը։ Դրանք տանում են դեպի այդ սիստեմի ռեակցիոն տենդենցների ուժեղացում, աջ սպառնալիքի մեծացում, միաժամանակ առաջացնելով բուրժուական դեմոկրատիայի՝ նրա ինստիտուտների, քաղաքական կուսակցությունների ու հոսանքների, գաղափարախոսության, բուրժուական հասարակության բարոյա-էթիկական արժեքների ամբողջ սիստեմի խոր ճգնաժամ։

Փորձելով հաղթահարել այդ պրոբլեմները, իմպերիալիզմը ճգնում է սոցիալական դեմագոգիայի միջոցների զինանոցից բացի օգտագործել նաև ուղղակի բռնության մեխանիզմը։ Հիրավի այրող պրոբլեմ է եղել և դեռ մնում է պայքարը աջ վտանգի դեմ, որի մասին ամբողջ ձայնով հայտարարեց 1969



թվականի խորհրդակցությունը։ Ձախ ուժերի խոշոր հաջողությունները առաջ են բերում ռեակցիայի կատաղի դիմադրությունը. նա այժմ դիմում է ամենավայրենի ու նողկալի հանցագործությունների։ Մասսաներին մոբիլիզացնելով՝ հակահարված տալու ռեակցիայի բոլոր ելույթներին, իմպերիալիզմի բոլոր հակագրոհներին, կոմունիստներն այդ բանի մեջ տեսնում են իրենց հարազատ ինտերնացիոնալ պարտքը։ Համաշխարհային համերաշխությունը չիլիացի մարտիկների հետ, ընկերներ Լ. Կորվալանի, Ռ. Արիսմենդիի և ռեակցիայի կալանավորներ դարձած մյուս հեղափոխականների, հայրենասերների ու դեմոկրատների ազատագրման համար ծավալված շարժումը վկայում են, որ այդ պայքարին մասնակցում են ամենալայն զանգվածները։

Բնական է, որ կոմունիստական շարժումը ուշադրությամբ ուսումնասիրում է չիլիական հեղափոխության փորձը, նրա նվաճումները հասարակական խոր վերափոխումների գործում։ Չնայած հաջորդած ողբերգությանը, չիլիական հեղափոխությունը տվեց անձնազոհության օրինակ՝ դեմոկրատիայի, ժողովրդական զանգվածների իսկական շահերի համար մղվող պայքարում։ Ամբողջ աշխարհի կոմունիստները անհրաժեշտ, կենսականորեն կարևոր դասեր են քաղում այդ փորձից։

Բոլոր այս պրոցեսները նոր պայմաններ են ստեղծում ինչպես կապիտալիստական երկրների ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում դասակարգային պայքարի ծավալման համար։ Հետևելով 1969 թվականի խորհրդակցության ոգուն, կոմունիստական շարժումը նշում է ժամանակակից համաշխարհային իրադրության երկու չափազանց կարևոր գործոն՝ միջազգային լարվածության թուլացումը, որ ձեռք է բերվել այդ տարիներին, և կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումը։

Լարվածության թուլացումը նշանակում է խոշոր, սկզբունքորեն կարևոր քայլ, ընկեր Լ. Ի. Բրեժնևի խոսքերով ասած, «միջազգային հարաբերությունների դեմոկրատացման» ճանապարհին։ Այդ թուլացումը միաժամանակ բարենպաստ ներգործություն է ունենում կապիտալի երկրների ներսում դասակարգային ուժերի տեղաբաշխման ու պայքարի վրա և օգնում է ետ մղելու ու մեկուսացնելու ծայրահեղ աջ ուժերին, վարկաբեկելու մոնոպոլիստական կապիտալի ռեակցիոն վերնախավի ագրեսիվ ու էքսպանսիոնիստական քաղաքականությունը։

Համառ պայքարում, որը անխուսափելի է լարվածության թուլացումը խորացնելու և ամրապնդելու ճանապարհին, մարքս-լենինյան կուսակցությունները նշում և բացում են այնպիսի ուղղություններ, որոնցով ընթանալով ամենից շուտ և ամենից վստահորեն կարելի կլինի իրականացնել միջազգային հարաբերությունների սիստեմի արմատական վերակառուցումը՝ ի շահ բոլոր խաղաղասեր ու առաջադեմ ուժերի։ Սոցիալիստական համագործակցության երկրների եղբայրական կուսակցությունները վերցրել են մի կուրս՝ լուծելու համար հիրավի պատմական մի խնդիր, այն է՝ ստեղծել միջազգային անվտանգության ընդհանուր սիստեմ, որը ընդգրկեր երկրագնդի բոլոր մայրցամաքներն ու շրջանները, անվտանգության մի սիստեմ, որը հիմնված լինի խաղաղ գոյակցության սկզբունքների անշեղ պահպանման, ռազմական լիցքաթափման և բոլոր բնագավառներում ծավալուն, բազմակողմանի իրավահավասար համագործակցության հետևողականորեն վարվող քաղաքականության վրա։

Այդ նպատակին հասնելու ճանապարհին կան մեծ դժվարություններ։ Խոսքը, առաջին հերթին, մեղմացման ու խաղաղ գոյակցության անմիջական հակառակորդների մասին է, որոնք արտահայտում են իմպերիալիզմի բացահայտ միլիտարիստական սկզբունքներ միջազգային ասպարեզում և ծայրահեղ ռեակցիոն, պրոֆաշիստական ու ֆաշիստական տենդենցներ՝ իրենց երկրների ներքին քաղաքականության մեջ։ Այնուհետև, խոսքը բուրժուական քաղաքագետների նենգ ձգտման մասին է՝ մեղմացումն օգտագործել իրենց շահադիտական նպատակների համար, ի վնաս աշխարհի ժողովուրդների, սոցիալիզմի երկրների և ամբողջ հեղափոխական շարժման, նրա շարքերում սերմանել պատրանքներ իմպերիալիզմի դասակարգային բնույթի «փոփոխման» մասին, հակադիր

սոցիալական սիստեմների «կոնվերգենցիայի» և կապիտալիստական երկրների ներսում «դասակարգային հաշտության» մասին։ Վերջապես, խոսքը չինական ղեկավարության կատաղի հակասովետական քաղաքականության մասին է, որի նպատակն է ձախողել այն ամենը, ինչ ձեռք է բերվել արդեն մեղմացման դժվարին ճանապարհին, և դիմադրություն ցույց տալ այդ ասպարեզում կատարվող բոլոր հետագա քայլերին։

Միջազգային պայմանները գնալով ավելի շոշափելի ազդեցություն են ունենում հասարակական զարգացման ընթացքի վրա առանձին երկրների շրջանակներում, իսկ ներքաղաքական կյանքի կարևոր հարցերից շատերը, իրենց հերթին, ստանում են ինտերնացիոնալ բնույթ։ Այդ բանը հաստատող ամենահամոզիչ օրինակներից մեկը աշխատավորների միասնության հրատապ խնդիրն է վերազգային մոնոպոլիաների դեմ մղվող պայքարում։ Մյուս օրինակը մեծ շրջանների, օրինակ՝ Արևմտյան Եվրոպայի կամ Լատինական Ամերիկայի մասշտաբով, բոլոր առաջադիմական, դեմոկրատական ուժերի միասնական գործողությունների քաղաքական ծրագիրը օրակարգի հարց դարձնելն է։ Ըստ էության, արդի ամբողջ սոցիալական պայքարի ընթացքում գնալով ավելի համառորեն է առաջ քաշվում բուրժուական հասարակության արմատական վերափոխման ընդհանուր պրոբլեմը։ Միանգամայն ակնհայտ է, որ դա ոչ թե նսեմացնում, այլ, ընդհակառակը, ընդգծում է այս կամ այն շրջանում և երկրում պայքարի կոնկրետ պայմանները ճշտորեն հաշվի առնելու, անընդհատ որոնելու և մասսաներին իրոք հուզող ու հեղափոխական շարժման բախտի համար կարևոր պրոբլեմները առաջին պլանի վրա քաշելու անհրաժեշտությունը։

Կոմունիստները պարզ գիտակցում են իրենց պատմական պատասխանատվությունը բանվորական շարժման հանդեպ, սոցիալական ու ազգային ազատագրության, աշխարհի հեղափոխական նորացման բոլոր ուժերի հանդեպ։ Մարտնչող մասսաներին հակաիմպերիալիստական միասնության կոչ անելով, կոմունիստական շարժումը ձգտում է ամենից առաջ սեփական շարքերի համախմբվածության։

Ելույթ ունենալով Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների առջև, ընկեր Լ. Ի. Բրեժնևը ասաց. «Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը իր բարձր պատասխանատվության գիտակցությամբ է մասնակցում կոմունիստական շարժման առջև կանգնած ընդհանուր խնդիրների լուծմանը։ Մեր կուսակցությունը իր սրբազան պարտքն է համարում նպաստել այն մեծ շարժման հեղինակության ու համախմբվածության աճին, որը ներկայացնում է ամենաազդեցիկ քաղաքական ուժը սոցիալիզմի ու խաղաղության համար, ազգային ու սոցիալական ազատության համար մղվող համաշխարհային պայքարում»։

Իր ամբողջ պատմության ընթացքում կոմունիստական շարժումը, որին խորթ են ամեն տեսակ շաբլոնն ու քարացածությունը, ձգտել է միասնության այնպիսի ձևերի, որոնք ամենից ավելի մեծ չափով են նպաստում իր առջև ծառացած խնդիրների կատարմանը։ Այս տեսակետից 1969 թվականի խորհրդակցությունը իրենով նշանավորում է մի կարևոր ուղենիշ, քանի որ այդ խորհրդակցությունը, հենվելով 1957 և 1960 թվականների խորհրդակցությունների արգասավոր արդյունքների վրա, առավել ամբողջական արտահայտեց կոմկուսակցությունների գործունեության ազգային և ինտերնացիոնալ խնդիրների դիալեկտիկական միասնությունը։ «Յուրաքանչյուր կոմունիստական կուսակցություն,— ասվում է 1969 թ. խորհրդակցության հանրագումարային փաստաթղթում,— իր գործունեության համար պատասխանատու է իր բանվոր դասակարգի ու ժողովրդի առջև և միաժամանակ՝ միջազգային բանվոր դասակարգի առջև։ Յուրաքանչյուր կոմունիստական ու բանվորական կուսակցության ազգային և ինտերնացիոնալ պատասխանատվությունը անբաժան է։ Մարքսիստ-լենինյանները միաժամանակ թե՛ հայրենասերներ են, թե՛ ինտերնացիոնալիստներ, նրանք մերժում են թե՛ ազգային սահմանափակությունը, թե՛



ազգային շահերի ժխտումը կամ թերագնահատումը, թե՛ գերիշխանության միտումը»։

Կոմունիստական շարքերի միասնության կազմակերպական-քաղաքական ձևերի մշակումը միշտ ընթացել է օպորտունիզմի դեմ մղվող ամենասուր պայքարում, իսկ 60-ական թվականները կոմունիստական շարժման պատմության մեջ եղել են այնպիսի մի ժամանակաշրջան, երբ այն ամենալուրջ փորձությունների է ենթարկվել ՉԿԿ-ի մաոիստական ղեկավարության հակալենինյան պառակտչական կուրսի հանդեպ, կոմունիստական շարժման դեմ այդ կապակցությամբ սրված հարձակումների հանդեպ, որ նախաձեռնում էին նրա թշնամիները՝ իմպերիալիստական ստրատեգներից մինչև ավանտյուրիստական ձախ խմբավորումները։ 1969 թվականի խորհրդակցության հրավիրման բուն փաստը և նրա հաջող աշխատանքը վկայեցին իրենց շարքերի միասնության համար մղած պայքարում կոմունիստների աչքի ընկնող նվաճումը։

Կենսագործելով խորհրդակցության մշակած համաձայնեցված գիծը, մարքսիստ-լենինյանները կարողացան հակահարված տալ կոմունիստական շարժումը կազմակերպական տեսակետից պառակտելու մաոիստների փորձերին։ Դրա հետ մեկտեղ նրանք պայքարել և պայքարում են մաոիզմի դեմ, որպեսզի այն ջախջախեն տեսականորեն, քաղաքականապես՝ որպես հակամարքսիստական և հակալենինյան հոսանք, որը թշնամի է ամբողջ հեղափոխական շարժմանը։

1969 թվականի խորհրդակցությունը նոր ուժով ցուցադրեց, որ կոմունիստական շարժման մեջ խորը արմատավորվել են կուսակցությունների փոխհարաբերությունների դեմոկրատական, կոլեկտիվիստական սկզբունքները, որոնք նպատակամղված են կոմունիստների ինտերնացիոնալ միասնության բուն ամենայնի ամրապնդմանը, բոլոր օպորտունիստական հոսանքների դեմ մղվող պայքարին։ Մարմնավորվելով կյանքում, ինտերնացիոնալիստական այդ սկզբունքները զարգացան ու դարձան կուսակցությունների միջև բազմաթիվ ու բազմապիսի կոնտակտների մի լայն սիստեմ, ինչպես երկկողմ, այնպես էլ բազմակողմ հիմքի վրա մշտական միջկուսակցական համագործակցության մի ճկուն, կենսունակ մեխանիզմ։

Այդ վեհաժողովի մասնակիցները կատարեցին խոշոր առաջընթաց քայլ, զգալիորեն խորացնելով ու կոնկրետացնելով 1957 և 1960 թվականների խորհրդակցությունների հետևությունները, մշակելով միջազգային մասշտաբով կոմունիստական շարժման համար միասնական գործողությունների նոր պլատֆորմ։ Խորհրդակցության քաղաքական ծրագրի իրականացման նպատակով մղվող պայքարը կոմունիստների համար դարձել է գործուն պրոլետարական ինտերնացիոնալիզմի լավագույն դպրոց։

Խորհրդակցության փաստաթղթերը շոշափել են տեսության հարցերի, կոմունիստների գաղափարական միասնության հարցերի լայն շրջան։ 1969 թվականի խորհրդակցությունը կոմունիստական շարժման առջև ամբողջ խորությամբ դրեց իրար հետ անխզելիորեն կապված խնդիրներ՝ հեղափոխական տեսությունը պաշտպանել այն խեղաթյուրելու կամ խարխլելու փորձերից և շարունակ զարգացնել, հարստացնել այն՝ դասակարգային պայքարի և սոցիալիստական հասարակարգի կառուցման ժամանակակից փորձի հիման վրա։ Խորհրդակցությունը մեծապես նպաստեց մարքսիզմ-լենինիզմի՝ որպես աշխարհում ամենաազդեցիկ գաղափարախոսության հաստատմանը և նոր զարկ տվեց օպորտունիզմի ու բուրժուական ջատագովության դեմ կոմունիստական շարժման մղած հաջող պայքարին։

Կոմկուսակցությունների տեսական աշխատանքի հարցերը, գաղափարախոսության բնագավառում նրանց ինտերնացիոնալ համագործակցության պրոբլեմները բացառիկ կարևոր տեղ էին գրավում այդ տարիներին, և նրանց տեսակարար կշիռը շարունակում է աճել։ Մարքսիստ-լենինյանները այդ տենդենցը համարում են խորապես օրինաչափ, քանի որ ինչքան ժողովրդական զանգվածները ավելի շատ են ներգրավվում դասակարգային մարտերի մեջ և որքան ավելի է աճում նրանց քաղաքական ակտիվությունը, այնքան ավելի է

*մեծանում գաղափարախոսական պայքարի նշանակությունը։ Հենց դրանում է մեր ժամանակի բնորոշ գիծը։*

*Կոմունիստական կուսակցությունները գնալով ավելի համառորեն են ծավալում գաղափարախոսական աշխատանքը, առանձնահատուկ նշանակություն տալով այդ բնագավառում ինտերնացիոնալ համագործակցության ամրապնդմանն ու զարգացմանը։ Վերջին հինգ տարում այստեղ արդեն կուտակվել է հարուստ ու արժեքավոր փորձ, որը բազմաթիվ միջազգային տեսական հանդիպումներից բացի ընդգրկում է համաշխարհային գաղափարական-քաղաքական կամպանիաներ, որոնք դարձան կոմունիստների գաղափարական զենքի մարտական ստուգատես՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի 150-ամյա հոբելյանների, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի, ՌՍԴԲԿ II համագումարի 70-ամյակի տոնակատարությունները։*

*Այս ոլորտում լայն հեռանկարներ է բացում գաղափարախոսական համագործակցության հարցերի շուրջ սոցիալիստական երկրների եղբայրական կուսակցությունների կենտկոմների քարտուղարների 1973 թվականի դեկտեմբերին կայացած խորհրդակցությունը։ «Պրոբլեմի միրա ի սոցիալիզմա» հանդեսի բեղմնավոր գործունեությունը, գնալով ընդլայնվող կոնտակտները մարքսիստական հետազոտական կենտրոնների միջև, աշխատանքային սերտ կապերի հաստատումը կոմունիստական մամուլի օրգանների, մասնավորապես կուսակցությունների տեսական հանդեսների միջև, ընդունակ են նոր թափ հաղորդելու կոմունիստների ինտերնացիոնալ համագործակցությանը գաղափարախոսության բնագավառում և գործնականորեն նպաստելու մարքս-լենինյան տեսության հրատապ պրոբլեմների մշակմանը, է՛լ ավելի վճռական հարձակմանը թշնամական գաղափարախոսության դիրքերի վրա։*

*Քաջ հայտնի է, որ ոչ մի կուսակցություն, քաղաքական ոչ մի հոսանք այնքան չի բարձրացրել տեսության նշանակությունը, մասսաների գիտակցականության նշանակությունը, որքան այդ արել են կոմունիստները։ Քանզի կոմունիստները համաշխարհային հասարակական առաջադիմության մարտական ու գիտակից ավանգարդն են։ Կոմունիստների համաշխարհային համաժողովները ամենախոշոր, ամենանշանավոր ուղենիշներն են նրանց շարքերի միասնության ամրապնդման, ինտերնացիոնալ մասշտաբով նրանց գաղափարական-քաղաքական համախմբման ճանապարհին։ 1969 թվականի խորհրդակցությունից հետո անցած հինգ տարում այնքան շատ բան է փոխվել համաշխարհային իրադրության մեջ, որ կոմունիստական շարժումը, ինչպես գնալով ավելի հաճախակի են նշում նրա տարբեր ջոկատների ներկայացուցիչները, հասունացած պահանջ է զգում կոլեկտիվ կերպով քննարկելու նոր պրոբլեմները և գտնելու դրանց կոնստրուկտիվ որոշումները, համատեղ որոշելու միասնական գործողությունների նոր խնդիրները իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։ ՍՄԿԿ-ն ամբողջապես բաժանում է այդ մոտեցումը և պատրաստ է պաշտպանելու այն նախաձեռնությունները, որոնք ուղղված են կոմունիստական շարժման գաղափարական-քաղաքական հետագա կոնսոլիդացմանը, նրա դերի բարձրացմանը՝ իբրև մարտնչող մասսաների ղեկավարի։ Հենվելով իր մարտական փորձի վրա, որ նա նվաճել է 1969 թվականի միջազգային խորհրդակցության գաղափարների իրականացման համար մղվող պայքարում, կոմունիստական շարժումը է՛լ ավելի վստահորեն, ավելի մեծ հաջողությամբ առաջ կընթանա դեպի նորանոր հաղթանակներ՝ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում։*

«Коммунист», 1974, № 9.

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

**ՅՈՒ. Ե. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ**
ՀՍՍՀ պետպլանի նախագահի տեղակալ

Սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը բացառիկ մեծ ուշադրություն են նվիրել գիտատեխնիկական առաջընթացին, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում գիտության դերին։ Գիտական հետազոտությունների ըստ ամենայնի ծավալումը, առաջավոր գիտության հիմքի վրա բարձր զարգացած, տեխնիկապես զինված արդյունաբերության ու գյուղատնտեսության ստեղծումը Վ. Ի. Լենինը համարում էր կոմունիստական հասարակարգի կառուցման վճռական գործոններից մեկը։ Սովետական իշխանության առաջին տարիներին, երբ երիտասարդ հանրապետությունը պայքարում էր ինտերվենցիայի ու ներքին հետադիմության դեմ և երկրում դեռ տիրում էին քաղցն ու աղքատությունը, Վ. Ի. Լենինը ժամանակ էր գտնում մոտիկից զբաղվելու գիտության զարգացման կարևորագույն հարցերով և առաջնահերթ նշանակություն էր տալիս գիտական հետազոտությունների կազմակերպման ու ծավալման գործին։ Նշելով երկրի հսկայական բնական հարստությունների յուրացման անհրաժեշտությունը, Վ. Ի. Լենինը տակավին 1918 թ. գարնանը Սովետական իշխանության հերթական խնդիրները հոդվածում գրում էր. «Այդ բնական հարստությունների մշակումը նորագույն տեխնիկայի եղանակներով՝ հիմք կստեղծի արտադրողական ուժերի չտեսնված առաջընթացի համար» (Երկեր, հ. 27, էջ 307)։

Նույն 1918 թ. Լենինն իր Գիտատեխնիկական աշխատանքների պլանի ուրվագծում առաջ քաշեց ու մշակեց գիտական խոր հետազոտություններ պահանջող ժողովրդատնտեսական մի շարք խոշոր պրոբլեմներ՝ էլեկտրիֆիկացիայի զարգացումը, հումքային ռեսուրսներով երկրի ապահովումը, արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխումը։ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ու անմիջական ղեկավարությամբ 1920—1922 թթ. մշակված ԳՈԷԼՌՈ-ի պլանը և դրա հետագա իրականացումն ըստ էության էկոնոմիկայի զարգացման հիմնական կոմպլեքսային խնդիրներից մեկի լուծման՝ էներգետիկ բազայի ստեղծման, արդյունաբերության, տրանսպորտի ու գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման գործում տարբեր բնագավառների գիտնականների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների ուժերի կենտրոնացման արդյունավետության առաջին պերճախոս օրինակն է։

Սովետական Միության էկոնոմիկայի զարգացման բոլոր խոշորագույն պրոբլեմները միշտ լուծվել են գիտության ու արտադրության համագործակցությամբ. օրինակներ շատ կարելի է բերել՝ ատոմային էներգիայի օգտագործումը, խոպանի յուրացումը և վիթխարի շատ այլ ձեռնարկումներ, որոնք իրագործվել են գիտնականների և արտադրության մարդկանց համատեղ ջանքերով։

Գիտատեխնիկական առաջընթացի խնդիրներին հսկայական կարևորություն է տրվում հատկապես այժմ՝ իններորդ հնգամյակում, երբ առանձին նշանակություն է ստանում առաջավոր գիտության ու տեխնիկայի հիմքի վրա ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվացումը։ «Այն դաքաշրջանում,— ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց Լ. Ի. Բրեժնևը, —երբ ավելի

ու ավելի մեծ չափով է դրսևորվում գիտության՝ որպես անմիջական արտադրաուժի դերը, գլխավոր են դառնում արդեն ոչ թե նրա առանձին նվաճումները, որքան էլ փայլուն լինեն դրանք, այլ ամբողջ արտադրության գիտատեխնիկական բարձր մակարդակը»: Եվ ապա՝ «Գիտության ու տեխնիկայի առաջընթացը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գլխավոր լծակն է (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 343, 345—346):

Այսպիսով, երկրի տնտեսական զարգացման գլխավոր ստրատեգիական ուղղությունըն աշխատանքի արտադրողականության, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումն է: Արտադրության աճն ու արտադրանքի որակի բարելավումը պետք է ապահովվեն ոչ այնքան նոր կապիտալ ներդրումներով, աշխատողների թվի մեծացմամբ, այլ կերպ ասած՝ էքստենսիվ եղանակով. այդ խնդիրը կլուծվի գլխավորապես արտադրության մեջ աճի ինտենսիվ գործոնների ներդրմամբ, եղած արտադրական հզորությունների առավել ռացիոնալ օգտագործմամբ, ժամանակակից գիտության ու տեխնիկայի պահանջներով դրանց անընդհատ կատարելագործմամբ: Հենց այդ պատճառով է, որ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու խնդիրն այսօր գտնվում է կուսակցության ուշադրության կենտրոնում: Գիտատեխնիկական հեղափոխության արագ արմատավորումը սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման և որակական կատարելագործման հիմնական ուղին է:

Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներով, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների սովետը մեծ ուշադրություն են նվիրում հանրապետության ժողովրդական տնտեսության գիտատեխնիկական առաջընթացին, գիտության ու արդյունաբերության նոր, ժամանակակից ճյուղերի ստեղծմանը, որոնց առկայությունն ինքնին նշանակալից քայլ է գիտատեխնիկական հեղափոխության ճանապարհին: Անցյալում, ինչպես հայտնի է, Հայաստանը գերազանցապես վերամշակող արդյունաբերության հանրապետություն էր, մինչդեռ վերջին 10—15 տարում լայն զարգացում ստացան այնպիսի ժամանակակից ճյուղեր, որպիսիք են՝ ռադիոէլեկտրոնիկան ու սարքաշինությունը, ճշգրիտ հաստոցաշինությունը, միկրոկենսաբանական, բուժական արդյունաբերությունը և այլն: Որակապես խիստ փոփոխվեցին գյուղատնտեսությունը, տրանսպորտն ու կապը, որոնց զարգացմանը բնորոշ է գիտության և տեխնիկայի նվաճումների լայն կիրառումը:

Բնականաբար, արդյունաբերության կառուցվածքի ու ծավալների փոփոխություններին ուղեկցում, իսկ հաճախ էլ դրանցից առաջ էր անցնում գիտական հետազոտությունների զարգացումը, ստեղծվում էին գիտության համապատասխան ճյուղերի նոր գիտական ու կոնստրուկտորա-տեխնոլոգիական հաստատություններ: Այժմ Հայաստանում գործում են 100-ից ավելի գիտական հաստատություններ, որոնց մեծ մասը հետազոտություններ է կատարում մաթեմատիկայի, քիմիայի, տեխնիկական և այլ գիտությունների բնագավառում: Այդ ամենի շնորհիվ Հայաստանն այժմ ավտոմատացման միջոցների, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, սարքերի, էլեկտրատեխնիկական արտադրանքի, ճշգրիտ մետաղահատ հաստոցների մշակմամբ ու արտադրությամբ երկրում գրավում է առաջնակարգ տեղերից մեկը:

Ընթացիկ հնգամյակն ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ Հայաստանի համար ինտենսիվ զարգացման, այսինքն՝ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ըստ գիտատեխնիկական առաջընթացի զարգացման հնգամյակ է: Հայտնի է, որ հնգամյա պլանի առաջադրանքներով Հայաստանի համար նախատեսվում է արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության աճի բավական բարձր տեմպ: Ընդ որում, արդյունաբերության մեջ այդ աճի մոտ 80, իսկ շինարարությունում և գյուղատնտեսության մեջ՝ 100 տոկոսը պետք է ձեռք բերվի ինտենսիվ գործոնների՝ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրմամբ, աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ: Դա, իհարկե, չի նշանակում, թե հանրապետությունում նոր ձեռնարկություններ չեն կառուցվի: Արդյունաբերության բոլոր ճյուղերում այդպիսի ձեռնարկություններ կառուցվում են, գործողներն ընդլայնվում, բայց, դրանով հանդերձ, շատ մեծ ուշադրություն է հատկացվում եղած արտադրական հզորությունների արդյունավետ օգտագործմանը, արտադրանքի որակի բարելավմանը, հումքային ու էներգետիկ ռեսուրսների ռացիոնալ ծախսմանը:

Ժողովրդական տնտեսության ճյուղերում գիտատեխնիկական առաջընթացը հնարավոր է միայն գիտական հաստատությունների և արտադրական ձեռնարկությունների սերտ համագործակցությամբ:



Բնավ չնսեմացնելով հիմնարար գիտությունների իսկայական նշանակությունը, տեսական հետազոտությունների, հետախուզական մշակումների խոշոր դերը, գիտության ու տեխնիկայի հեռանկարային զարգացման գործում դրանց ազդեցությունը, միաժամանակ հարկ է ընդգծել, որ գիտատեխնիկական հեղափոխությունը հնարավոր է միայն ու միայն արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ գիտության նվաճումները լայնորեն ներդնելու, ժողովրդական տնտեսության մեջ նոր առաջադիմական ուղղություններ ստեղծելու միջոցով:

Հայկական ՍՍՀ արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման պրակտիկան բավական հարուստ է արտադրության և գիտության անմիջական կապի, արտադրության հետ գիտական հաստատությունների մշտական համագործակցության օրինակներով: Այսպես, հանրապետությունում էլեկտրոնային հաշվիչ մեքենաների արտադրության ստեղծման համար որոշիչ նշանակություն ունեցավ Հայաստանում մաթեմատիկական դպրոցի առկայությունը: Դրա շնորհիվ 1956 թ. ստեղծված մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը ձեռնամուխ եղավ ԷՀՄ-երի և նրանց կոմպոնենտների հետազոտությունների լայն ծրագրի մշակմանը: Ինչպես մեզ մոտ, այնպես էլ արտասահմանում այժմ արդեն լայն ճանաչման են արժանացել Երևանում մշակված և թողարկված հաշվիչ մեքենաները: «Նաիրի» տիպի մեքենաների հեղինակները 1972 թ. արժանացան ՍՍՀՄ պետական մրցանակի:

ԷՀՄ-երի մշակման և արտադրության մարզի հաջողությունները հնարավորություն ընձեռեցին աշխատանքներ ծավալելու այդ մեքենաների հիմքի վրա կառավարման ավտոմատացված համակարգեր ստեղծելու նպատակով: Այժմ այդ ասպարեզում գործում են մի քանի գիտական խմբեր, որոնք ավտոմատ համակարգեր են մշակում ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի համար: Դրանցից են կապի, թեթև արդյունաբերության, ավտոտրանսպորտի, նյութատեխնիկական մատակարարման, կառավարման ավտոմատացված համակարգերը, պլանային հաշվումների և ինֆորմացիայի ավտոմատացված սիստեմները: Այդ բոլոր մշակումները մի նպատակ են հետապնդում՝ կիրառելով գիտության վերջին նվաճումները, կատարելագործել, նոր աստիճանի բարձրացնել կառավարման սիստեմը:

Արտադրության վրա գիտության ազդեցության ու դրանց համագործակցության օրինակ է միկրոկենսաբանական արդյունաբերության զարգացումը: Հայկական ՍՍՀ ԳԱ միկրոբիոլոգիայի ինստիտուտի կողմից միկրոկենսաբանական սինթեզի բնագավառում անցկացված հետազոտությունները հնարավորություն ընձեռեցին ստեղծելու սպիտակուցների, ամինաթթուների, կենսապատրաստուքների արտադրության միանգամայն նոր ճյուղ: Արդեն գործարկված ձեռնարկություններն այժմ թողարկում են այնպիսի արժեքավոր արտադրատեսակներ, ինչպիսիք են սննդի լիզինը, գյուղատնտեսական կենսապատրաստուքները: Հետագայում կարելի կլինի ստեղծել նաև սպիտակուցա-վիտամինային խտակերի ու կերային խմորիչների արտադրություն, որը խիստ կարևոր է բնական կերի սահմանափակ հնարավորության պայմաններում անասնաբուծության զարգացման համար:

Արդյունավետ համագործակցությամբ են աշխատում էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններն ու գիտական հաստատությունները: Այս բնագավառում վերջերս կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի և Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանի հիմքի վրա ստեղծվեց «Հայէլեկտրամեքենա» արտադրա-գիտական միավորումը, որը հնարավորություն է ընձեռում կազմակերպորեն ավելի ամրապնդելու գիտության և արտադրության կապը:

Հետևողականորեն կատարելագործելով երկրի տնտեսական կառավարման սիստեմը, բարձրացնելով գործի նկատմամբ ժողովրդական տնտեսության աշխատողների պատասխանատվությունը, ՍՄԿԿ Կենտկոմն աշխատավորների ուշադրությունը մշտապես բևեռում է թերությունները բացահայտելու, դրանք վերացնելու նպատակով վճռական միջոցներ ձեռնարկելու վրա: Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը (1973 թ.) մեկ անգամ ևս կուսակցության ու ամբողջ ժողովրդի առջև ամենայն սրությամբ դրեց ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների կատարման խնդիրները: Պլենումում ընկեր Բրեժնևի զեկուցման մեջ տրված էին եղած թերությունների կոնկրետ ու սկզբունքային քննադատությունը, երկրի տնտեսության հե-

տագա զարգացման հարցերի խոր վերլուծությունը, նշված էին սոցիալիստական շինարարության առաջադրած խնդիրների կենսագործման ուղիներն ու միջոցները:

Հսկայական հաջողությունների հասնելով սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ասպարեզում ու պատմական կարճ ժամանակամիջոցում կայուն կերպով աշխարհում զբաղեցնելով երկրորդ, իսկ մի շարք արտադրությունների գծով՝ նաև առաջին տեղը, մեր երկիրը, կուսակցության ու նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ, նշանակալի քայլ է արել կոմունիզմի կառուցման ճանապարհին: Չի կարելի չընկատել, սակայն, որ մի շարք ցուցանիշներով մենք դեռևս ետ ենք մնում որոշ կապիտալիստական զարգացած երկրներից: Այսպես, արդյունաբերության և հատկապես գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը դեռևս ավելի ցածր է, քան ԱՄՆ-ում: Գյուղատնտեսական մի շարք կուլտուրաների բերքատվությունը դեռ չի հասել այն մակարդակին, որը ձեռք է բերվել արտասահմանյան որոշ երկրներում, բավականաչափ բարձր չէ նաև գյուղատնտեսական կենդանիների միջին մթերատվությունը և այլն: Ետ մնալը մենք պետք է հաղթահարենք գլխավորապես գիտության ու նոր տեխնիկայի նվաճումների ներդրմամբ, գիտատեխնիկական առաջընթացի կենսագործմամբ՝ օգտագործելով սոցիալիստական տնտեսավարման պլանային սիստեմի բոլոր առավելությունները:

Երկրի տնտեսության կառավարման համակարգի կատարելագործման նպատակով ձեռնարկված կարևորագույն քայլերից է գիտա-արտադրական և արտադրական միավորումներ ստեղծելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի վերջերս ընդունած որոշումը: Դրանց ստեղծման գաղափարն ինքնին նոր չէ: Հանրահայտ են այնպիսի միավորումների հաջողությունները, ինչպիսիք են Լենինգրադի օպտիկամեխանիկականը և այլ ձեռնարկություններ: Գիտա-արտադրական միավորումները, որպես կանոն, ներառնում են իրենց մեջ գիտահետազոտական ինստիտուտն ու մի շարք ձեռնարկություններ: Նման դաշինքը համընդհանուր է դարձնում գիտատեխնիկական առաջընթացի խնդիրները, կենտրոնացնում ուժերն ու միջոցները, վերացնում տվյալ ճյուղի նույնանման ձեռնարկությունների աշխատանքում երբեմն նկատվող խզվածությունը, ամրապնդում արտադրության կոոպերացման ներճյուղային կապերը և այլն: Այժմ միավորումների ստեղծման սիստեմն ամենուրեք ճանաչում է գտել և, անշուշտ, արդեն շոշափելի արդյունքներ է տալիս:

Սովետական հանրապետությունների եղբայրական ընտանիքում Հայկական ՍՍՀ-ն աշխատանքի հասարակական բաժանման մեջ իր էական բաժինն ունի: Դրանից էլ բխում են արտադրության արդյունավետության բարձրացման այն լուրջ խնդիրները, որ դրված են մեր հանրապետության առջև: Այդ խնդիրները ելնում են ինչպես ընդհանուր միութենական պրոբլեմներից, այնպես էլ հանրապետության յուրահատուկ պայմաններից: Մասնավորապես, ժողովրդական տնտեսության զարգացման ուղիները նշելիս պետք է հաշվի առնել սակավահողությունը, հարուստ հումքային ռեսուրսների, որակյալ բանվորական ուժի և զարգացած գիտության առկայությունը: Հայաստանի էկոնոմիկայի զարգացման հեռանկարային ուղղությունները որոշելիս, մասնավորապես 1976—1990 թթ. հեռանկարային և տասներորդ հնգամյակի՝ 1976—1980 թթ. պլանները մշակելիս, որը կատարվում է այժմ, պետք է քննադատորեն վերլուծել էկոնոմիկայում եղած թերությունները և միջոցառումներ մշակել դրանք հաղթահարելու համար: Ընդ որում, միանգամայն ակնհայտ է, որ ինչպես Միության, այնպես էլ հանրապետության էկոնոմիկայի ինտենսիվացման գլխավոր միջոցը գիտատեխնիկական առաջընթացի կոմպլեքսային ծրագիրն է:

Ամենից առաջ պետք է նշել, որ հանրապետության արդյունաբերության մեջ դեռևս ցածր է արտադրության մեքենայացման ու ավտոմատացման մակարդակը, մեծ է ձեռքի աշխատանքի բաժինը: Մեքենաշինության մեջ այդ բաժինը կազմում է մոտ 40—45, թեթև արդյունաբերության մեջ՝ 40 տոկոս: Ժամանակակից սարքավորումներով զինված շատ ձեռնարկություններ դեռևս հեռու են արտադրողականության այն մակարդակից, որին հասել են երկրի առաջավոր ձեռնարկությունները: Այսպես, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում լեռնային սարքավորումների արտադրողականությունը 12—20 տոկոսով ցածր է, քան Սորսկի համանման կոմբինատում: Հանրապետության թեթև արդյունաբերության գործվածքային սարքավորումների արտադրողականությունը միութենական միջին մակարդակից ցածր է 15—17 տոկոսով:

Արդյունաբերության աշխատանքի լուրջ թերությունը շատ ձեռնարկությունների



թողարկած արտադրանքի ցածր որակն է: Բավական է ասել, որ տարբեր ճյուղերում որակի նշանի արժանացած արտադրատեսակների բաժինը կազմում է ընդամենը 3—5 տոկոս, որը, իհարկե, խիստ անբավարար է: Որակի տեսչությունները քանիցս խոտանել են սննդամթերքի «Արագած» սառնարանի, թեթև արդյունաբերության ու մեքենաշինության արտադրանքի խոշոր պարտիաներ: Գյուղատնտեսության մեջ ևս կան մի շարք չլուծված խնդիրներ: Խոսքն ամենից առաջ մի շարք կուլտուրաների ցածր բերքատվության, աշխատանքի ցածր արտադրողականության մասին է: Անբավարար է այգիների ու լեռնային դարավանդների մշակման մեքենայացումը:

Այս և չլուծված շատ հարցեր գիտության և տեխնիկայի նվաճումների ներդրման, աշխատանքի գիտական կազմակերպման, ամբողջությամբ վերցրած գիտատեխնիկական առաջընթացի խնդիրների նկատմամբ անբավարար ուշադրության հետևանք են: Իսկ ո՞վ է կրում գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման, արտադրության ինտենսիվ զարգացման խնդիրների կոմպլեքսային լուծման պատասխանատվությունը: Ո՞վ պետք է առավել շահագրգռված լինի այդ կարևորագույն գործի ճիշտ կազմակերպմամբ՝ գիտական հաստատություննե՞րը, թե՞ արտադրական ձեռնարկությունները: Մեր կարծիքով նման հարցադրումը ճիշտ չէ. սերտ կապը, պատասխանատվությունը և շահագրգռվածությունը երկուստեք լինելու դեպքում միայն գիտական հաստատություններն ու արդյունաբերական կամ գյուղատնտեսական ձեռնարկություններն ի վիճակի կլինեն լուծելու գիտատեխնիկական առաջընթացի կոմպլեքսային խնդիրները:

Գիտության և արտադրության փոխադարձ կապի լավ օրինակ կարող է ծառայել երկրում հայտնի «Հայէլեկտրալույս» միավորումը, որտեղ նոր տեխնիկայի և տեսականու նորացման հարցերին առաջնահերթ նշանակություն է տրվում: Ժամանակակից տեխնիկայի առաջավոր բնագծերում է նաև Կիրովականի գերճշգրիտ հաստոցների գործարանը, որի արտադրատեսակները մի քանի անգամ արժանացել են մեդալների ու այլ մրցանակների: Նման ձեռնարկությունները քիչ չեն, և ժողովրդական տնտեսության հաջող զարգացման համար հանրապետությունը ամենից առաջ դրանց է պարտական:

Հայաստանում շատ են այն գիտահետազոտական հաստատությունները, որոնք ստեղծվել են հենց մեր հանրապետության արդյունաբերության զարգացման առանձնահատկություններից ելնելով: Մինչդեռ այժմ իրավիճակն այնպիսին է, որ դրանցից մի քանիսը գործում են ժողովրդական տնտեսության համապատասխան ճյուղերից անջատ և որևէ ձևով կապված չեն դրանց հետ: Այսպես, Կիրովականի «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտն ստեղծվել էր հատկապես Հայաստանի քիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի համար ավտոմատացման սիստեմներ մշակելու նպատակով: Դա ժամանակակից ապարատուրայով սարքավորված, բարձրորակ մասնագետներով ապահովված մի հաստատություն է, որը մեծ և օգտավետ աշխատանք է տանում երկրի մետալուրգիական ու քիմիական շատ ձեռնարկությունների արտադրության ավտոմատացման ասպարեզում: Ինստիտուտը որոշ աշխատանք է կատարում նաև Ալավերդու լեռնաքիմիական կոմբինատի համար, բայց այդ մշակումները դժվարությամբ են ներդրվում, իսկ հաճախ էլ ներդրվելուց մի քանի ամիս անց դադարեցվում է դրանց օգտագործումը: Այդ ամենը տեղի է ունենում այն պատճառով, որ կոմբինատի և գունավոր մետալուրգիայի վարչության ղեկավարությունը ինստիտուտի մշակումների ներդրման նկատմամբ անհրաժեշտ ուշադրություն ու շահագրգռություն չի ցուցաբերում: Իսկ կոմբինատը, մեղմ ասած, առայժմ չի կարող հպարտանալ իր շատ թե քիչ ակնառու հաջողություններով:

Եվս մի օրինակ, երբ ճյուղային ինստիտուտը գործում է ճյուղից կտրված. դա թեթև և տեքստիլ մեքենաշինության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Երևանի մասնաճյուղն է: Մինչդեռ հանրապետության թեթև արդյունաբերությունը, հավանաբար ավելի, քան որևէ այլ բնագավառ, ավտոմատ համակարգերի մշակման խիստ կարիք ունի:

Դրությունը այդպիսին է նաև գիտությունների ակադեմիայի մի քանի ինստիտուտներում: Այստեղ, ինչպես և մի շարք այլ դեպքերում, արտադրությունից ինստիտուտների կտրվածությունը խորանում է այն պատճառով, որ դրանք չունեն փորձնական-արտադրական բազա, իսկ դրա հետևանքով շատ հետազոտություններ չեն անցնում լաբորատոր մակարդակից, որը, բնականաբար, չի կարող բավարար լինել տվյալ մշակումն արտադրության մեջ ներդնելու համար: Կարելի է նշել ակադեմիայի այնպիսի ինստիտուտ-

ներ, ինչպիսիք են օրգանական քիմիայինը, կենդանաբանականը և ուրիշներ, որոնց հետազոտությունների արդյունքներն անբավարար են ներդրվում արդյունաբերության և գյո՛ղատնտեսության մեջ: Վերջին տարիներին ակադեմիայում փորձնական բազայի ընդլայնմանը լուրջ ուշադրություն է նվիրվում: Կառուցվել ու գործարկվել են ժամանակակից սարքավորումներով շենքերի համալիրներ մի շարք ինստիտուտների համար: Մոտ ապագայում ակադեմիայի կիրառական պրոֆիլի բոլոր ինստիտուտները կունենան ժամանակակից լաբորատոր ու փորձնական բազա, իսկ դա, անշուշտ, մեծ դեր կխաղա գիտահետազոտական աշխատանքների ներդրումն արագացնելու գործում:

Պետք է նշել առհասարակ, որ հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացի վրա Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ազդեցությունը դեռևս չի կարելի բավարար համարել: Չունենալով այժմ իր համակարգում տեխնիկական գիտությունների բաժանմունք, ակադեմիան չի գլխավորում հանրապետության տեխնիկական գիտական միտքը: Հայաստանում աշխատում են հազարավոր որակյալ ինժեներներ, կոնստրուկտորներ, արտադրության ղեկավարներ, և գիտությունների ակադեմիան՝ իբրև հանրապետության բարձրագույն գիտական մարմին, կարող է նրանց ջանքերը միավորել տասնյակ գիտական հաստատությունների հետ՝ անկախ նրանց գերատեսչական ենթակայությունից, և դառնալ նաև տեխնիկական գիտությունների կենտրոն: Դա, անշուշտ, կամրապնդի գիտություն-տեխնիկա-արտադրություն շղթան:

Զարգացման արդի շրջանի առավել կարևոր պրոբլեմներից մեկը բնության պահպանումը և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումն է: Մեր երկրում այդ պրոբլեմը գտնվում է կուսակցության և կառավարության ուշադրության կենտրոնում: Մարդու և բնության փոխգործողությունը սոցիալական ու գիտատեխնիկական պրոբլեմ է և կարող է ճիշտ լուծվել միայն պլանային սոցիալիստական էկոնոմիկայի պայմաններում, ժամանակակից գիտության և տեխնիկայի մեթոդներով ու միջոցներով: Հայաստանում, որը սակավաջուր է ու սակավահող, ունի զարգացած արդյունաբերություն և բարձր խտության ազգաբնակչություն, բնության պահպանման պրոբլեմը առանձնապես սուր է դրվում: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի որոշումներով գիտական հաստատությունների, արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկությունների առջև մեծ ու կոնկրետ խնդիրներ են դրվում Հրազդան, Դեբեդ, Ողջի գետերի, Սևանա լճի ջրերը աղտոտումից պահպանելու, դեպի մթնոլորտ քիմիական, լեռնահանքային ու ցեմենտի ձեռնարկությունների արտանետվածքները վերացնելու, հողային ռեսուրսները պահպանելու ու վերականգնելու և շատ այլ պրոբլեմների վերաբերյալ: Դրանք նույնպես կլուծվեն գիտության ու տեխնիկայի վերջին նվաճումների հիմքի վրա, իսկ դրա համար դարձյալ հարկավոր է կենտրոնացնել հանրապետության գիտությունների ակադեմիայի, ճյուղային գիտական հաստատությունների, արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, ինժեներա-տեխնիկական աշխատողների ջանքերը:

Գիտատեխնիկական հեղափոխության հսկայական խնդիրները կարող են լուծվել անհրաժեշտ թվով որակյալ մասնագետների, ինժեներների, տեխնիկների, բանվորների, բարձր որակավորման գիտաշխատողների առկայության դեպքում: Ժողովրդական տնտեսության ճյուղերի կառուցվածքում տեղի ունեցած որակական փոփոխությունների և նրա բուռն աճի կապակցությամբ հանրապետությունում միջոցներ ձեռնարկվեցին նաև բարձրագույն ու միջին մասնագիտական կրթությամբ կադրերի պատրաստման կառուցվածքը փոխելու, բոլորովին նոր ֆակուլտետներ, տեխնիկումներ ստեղծելու նպատակով: Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում, օրինակ, բացվեցին տեխնիկական կիբեռնետիկայի, ռադիոտեխնիկայի ֆակուլտետներ, Լենինականում ու Կիրովականում հիմնադրվեցին այդ ինստիտուտի մասնաճյուղեր: Ինստիտուտում պատրաստվում են գիտատեխնիկական առաջընթացի համար վճռորոշ նոր մասնագիտությունների՝ ավտոմատիկայի ու տելեմեխանիկայի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, կառավարման ավտոմատացված համակարգերի, ճշգրիտ մեխանիկայի սարքերի ինժեներներ: Երևանի պետհամալսարանը կադրեր է աճեցնում այնպիսի մասնագիտությունների գծով, ինչպես կիրառական մաթեմատիկան, տնտեսագիտական կիբեռնետիկան, ռադիոֆիզիկան ու էլեկտրոնիկան, միկրոբիոլոգիան և այլն: Տեխնիկումների և արհեստագործական տեխնիկական ուսումնարանների լայն ցանցը հնարավորություն ընձեռեց ընդարձակելու միջին տեխնիկական անձնակազմի և որակյալ բանվորների պատրաստման մասշտաբները:

Սակայն սխալ կլիներ կարծել, թե վիճակը գոհացուցիչ է: Արծարծելով էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման խնդիրը, անհրաժեշտ է նախ մտածել ժողովրդական տնտեսությունը բարձր որակավորման մասնագետներով ապահովելու մասին: Հարկ է լրիվ բավարարել ինժեներների նկատմամբ արդյունաբերության այնպիսի զարգացող ճյուղերի պահանջը, ինչպիսիք են՝ ռադիոէլեկտրոնիկան, սարքաշինությունը և այլն: Պետք է ընդլայնել համալսարանում կիրառական մաթեմատիկայի, իսկ գյուղատնտեսական բուհերում մի շարք մասնագիտությունների կադրերի պատրաստումը: Արդեն այժմ բավական սուր է դրված հանրապետությունը ինժեներային ֆիզիկայի մասնագիտությամբ կադրերով ապահովելու խնդիրը: Արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը բարձրորակ բանվորների, իսկ մի շարք մասնագիտությունների գծով՝ նաև տեխնիկների կարիք ունեն:

Մեր հանրապետությունում կան մեծ թվով բարձր որակավորում ունեցող կադրեր՝ դոկտորներ ու թեկնածուներ, որոնք կազմում են գիտական հաստատությունների աշխատողների ընդհանուր թվի մոտ 14 տոկոսը: Դա նշանակում է, որ ապահովվում է միանգամայն նորմալ միջին համամասնությունը. յուրաքանչյուր դոկտորի կամ թեկնածուի ընկնում է գիտական աստիճան չունեցող մոտ վեց աշխատող: Սակայն, եթե մի փոքր ավելի խոր վերլուծենք գիտական կադրերով ապահովվածության հարցը, ապա պարզ կդառնա, որ վիճակը հեռու է բարվոք լինելուց և սևեռուն ուշադրություն է պահանջում: Այսպես, ֆիզիկա-մաթեմատիկական և տեխնիկական պրոֆիլի գիտական հաստատությունների ավելի քան 12 հազար աշխատողներից դոկտորներ ու թեկնածուներ են միայն 5 տոկոսը, այն դեպքում, երբ բժշկական գիտությունների բնագավառում, օրինակ, այդ հարաբերակցությունը կազմում է 30, իսկ պատմական, փիլիսոփայական, բանասիրական, մանկավարժական գիտությունների բնագավառում՝ մոտ 40 տոկոս:

Բնավ չնսեմացնելով հասարակական գիտությունների հսկայական նշանակությունը մեր հասարակարգի զարգացման գործում կամ բժշկական գիտությունների մեծ դերն ու կարևորությունը, միաժամանակ կարելի է նշել, որ գիտության այդ ճյուղերում նկատվում է գիտական աստիճաններով կադրերի որոշ գերարտադրություն, մինչդեռ ֆիզիկա-մաթեմատիկական, տեխնիկական, քիմիական, երկրաբանական-հանքաբանական գիտությունների բնագավառում այդպիսի կադրերի մեծ պակաս է զգացվում: Մի՞թե կարելի է նորմալ համարել այն, որ էլեկտրատեխնիկական արդյունաբերության ու սարքաշինության բացարձակ ցուցանիշներով երկրում երրորդ տեղը զբաղեցնող մեր հանրապետությունը էլեկտրական մեքենաների, հաշվիչ տեխնիկայի ու ռադիոտեխնիկայի մարզում գիտության ոչ մի դոկտոր չունի: Իսկ հանրապետության գիտությունների ակադեմիան, մինիստրություններն ու գերատեսչությունները, գիտական հաստատություններն այդ կարևոր հարցին անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում:

Դժվար է, իհարկե, մի հոդվածում ընդգրկել հանրապետության ժողովրդական տնտեսության գիտատեխնիկական առաջընթացի բարդ ու փոխադարձաբար կապված հարցերի ամբողջ կոմպլեքսը: Այստեղ միահյուսվում են գիտահետազոտական հաստատությունների ու արդյունաբերական ձեռնարկությունների խնդիրները, ժողովրդական տնտեսության կառավարումը կատարելագործելու հարցերը, կադրերի պատրաստման, աշխատանքային ռեսուրսների օգտագործման և այլ բնույթի շատ խնդիրներ: Հարցերի այդ կոմպլեքսը, դրանց լուծումն էլ հենց դրված են հանրապետության ժողովրդական տնտեսության 1976—1990 թթ. հեռանկարային զարգացման, ինչպես նաև 1976—1980 թթ. տասներորդ հնգամյակի պլանների հիմքում, որոնք այժմ մշակվում են երկրի, այդ թվում և Հայաստանի պլանային մարմինների կողմից:

Այդ պլանների իրականացումը մի նոր էտապ կդառնա ՍՄԿԿ ծրագրի կենսագործման, մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման ճանապարհին:

# ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԱՎԵՏԱԲԵՐԸ

## («ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՆԻՖԵՍՏԻ» ՀԱՅԵՐԵՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

Մարքսիզմի երգ-երգոցը՝ **Կոմունիստական կուսակցության մանիֆեստը,**
մարդկային հանճարի ամենապայծառ փայլատակումներից է: Գիտական կո-
մունիզմի այդ անմահ ստեղծագործությունը դարձավ մարդկության հետագա
առաջընթացի գաղափարական դրոշը:
Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը **Մանիֆեստը** շարադրեցին գերմաներեն: Ու
թվում էր, թե այն գոնե նախնական շրջանում արձագանք կգտներ միայն
Գերմանիայի աշխատավորների մեջ: Բայց կատարվեց անսպասելին: **Մանի-
ֆեստը** միանգամից տարածվեց աշխարհով մեկ, ազդարարելով մարդկության
մոտալուտ արշալույսը:
Մարքսիզմին, **Կոմունիստական կուսակցության մանիֆեստին** աներկբա-
յորեն դիմեցին սոցիալական ու ազգային ճնշման դեմ ելած տարբեր ազգու-
թյան ու դավանանքի պատկանող առաջադեմ մարտիկները, բոլոր նրանք,
ովքեր մաքառում էին մարդկային վսեմ երազանքները իրողություն դարձնե-
լու համար: Այդ էր պատճառը, որ գալիքի առաջամարտիկները **Մանիֆեստը**
դարձրին իրենց երգ-երգոցը և այն թարգմանում էին մայրենի լեզուներով:
Սոցիալիստական մտքի պատմությունից մեզ հայտնի է, որ անցյալ դա-
րում ոչ մի տեղ այդքան սթափ չեն հետևել նոր գաղափարների երկունքին,
որքան Ռուսաստանում, որի առաջավոր զավակները, մտահոգված սեփական
հայրենիքի սոցիալական ազատագրմամբ, կլանում էին ամեն մի նոր խոսք:
Ռուս առաջավոր մտավորականներից շատերը զինվորագրվեցին մարքսիզմի
գաղափարներին, դարձան ոչ միայն մարքսիստական գրականության թարգ-
մանիչներն ու տարածողները, այլև հանդես եկան ինքնուրույն ուսումնասի-
րություններով, հայրենի իրականության փաստերի ու երևույթների վերլուծու-
թյունից հանգելով մարքսիստական եզրակացությունների:
Այն բանից հետո, երբ Ռուսաստանում բանվորական շարժումը հանգեց
սոցիալիստական գիտակցության և մարքսիզմն ընդունեց որպես գաղափա-
րական դրոշ, նոր էջ բացվեց Ռուսաստանի հեղափոխական շարժման պատ-
մության մեջ: Ռուս մարքսիստները, Վ. Ի. Լենինը Ռուսաստանում ապրող
ժողովուրդների լեզուներով Մարքսի և Էնգելսի աշխատությունների թարգ-
մանությունը դիտում էին իբրև հեղափոխական գործունեության մի կարևոր
բնագավառ: Հայտնի է, որ ՌՍԴԲԿ II համագումարից հետո Ժնևում Լենինի
նախաձեռնությամբ ստեղծվեց Կենտկոմի հրատարակչություն: Վերջինիս
կազմում Ստ. Շահումյանի գլխավորությամբ եռանդուն գործունեություն էր
ծավալել վրացերեն և հայերեն սոցիալ-դեմոկրատական գրականության
հանձնաժողովը: Հասունացող հեղափոխական վերելքը աշխատավորների
շրջանում մեծ հետաքրքրություն էր առաջացրել մարքսիստական գրակա-
նության նկատմամբ: Եվ ահա բոլշևիկյան տպագիր խոսքը արտասահմանից
հասավ նաև Կովկաս: 1904 թ. օգոստոսին Ստ. Շահումյանի և Մ. Մանու-
չարյանի թարգմանությամբ Ժնևում հայերեն լույս տեսավ Մարքսի և Էնգելսի
**Կոմունիստական կուսակցության մանիֆեստի** լրիվ տեքստը: Դա բացառիկ
կարևորության իրադարձություն էր հայ հեղափոխականների կյանքում: Ճիշտ



է, մինչ այդ նույնպես **Մանիֆեստը** հայերեն թարգմանելու փորձեր եղել են,
այդ մասին նույնիսկ հիշատակվել է գիտական կոմունիզմի հիմնադիրների
կողմից, բայց այդ փորձերը հաջողություն չեն ունեցել: Ժնևի բոլշևիկյան հրա-
տարակությամբ բանվոր դասակարգի հեղափոխական ուսմունքի ծրագրային
փաստաթուղթը լայն տարածում գտավ հայ պրոլետարիատի, աշխատավորա-
կան լայն զանգվածների շրջանում: Այն մեծապես խթանեց մարքսիստական
գրականության հետագա թարգմանությունների գործը, լիցքավորեց հայ հա-
սարակական-քաղաքական միտքը:
Գրականության մեջ ճիշտ է նկատված՝ Ստ. Շահումյանը ստեղծագործա-
կան մոտեցում ցուցաբերելով **Մանիֆեստի** թարգմանությանը, հարազատ է
մնացել տեքստի բովանդակությանը, հաղթահարել բազմաթիվ դժվարություն-
ներ, ստեղծել և գիտական շրջանառության մեջ է դրել մի շարք հայերեն
տերմիններ, որոնք մեծապես օգնեցին մայրենի լեզվի մարքսիստական, հա-
սարակական-քաղաքական տերմինաբանության մշակմանը: Անհրաժեշտ է
շեշտել, որ թարգմանության մեջ խնամքով պահպանվել են բնագրի հրապա-
րակախոսական պաթոսը, ոճական առանձնահատկությունները:
Սովետական իշխանության տարիներին Հայաստանում և սփյուռքում
**Մանիֆեստը** թարգմանվել և բազմիցս վերահրատարակվել է, սակայն դժվար
է գերագնահատել հայերեն առաջին հրատարակության նշանակությունը հայ
հասարակական-քաղաքական մտքի զարգացման, Հայաստանում մարքսիզմի
տարածման և բոլշևիկյան կազմակերպությունների պատմության մեջ:

***

Անդրադառնալով **Կոմունիստական կուսակցության մանիֆեստի** հայերեն
առաջին հրատարակության 70-ամյակին, չի կարելի չխոսել արդի աշխարհում
կատարվող տեղաշարժերի մասին, որոնք հաստատում են **Մանիֆեստի** հե-
ղինակների հանճարեղ կռահումները:
Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, **Մանիֆեստում** «...հանճարեղ պարզությամբ
ու ցայտունությամբ ուրվագծված է նոր աշխարհայեցողությունը, նաև սոցիա-
լական կյանքի բնագավառն ընդգրկող հետևողական մատերիալիզմը, դիա-
լեկտիկան, որպես ամենաբազմակողմանի ու խոր ուսմունք զարգացման մա-
սին, դասակարգային պայքարի և նոր, կոմունիստական հասարակություն
ստեղծող պրոլետարիատի համաշխարհային-պատմական հեղափոխական
դերի թեորիան» (Երկեր, հ. 21, էջ 45—46): Ահա թե ինչու մեր օրերում գի-
տական կոմունիզմի ծրագրային փաստաթուղթը հասարակական առաջընթա-
ցի համար պայքարող ամեն մի մարտիկի, կոմունիստի սեղանի գիրքն է,
ուղենիշը:
Արդ, խիստ այժմեական է հնչում գիտական կոմունիզմի հիմնարար
դրույթը՝ բանվոր դասակարգը այն ռեալ ուժն է, որը կոչված է կյանքում մարմ-
նավորելու կոմունիստական հասարակական իդեալը, իրականացնելու իր
պատմական առաքելությունը: Բանվոր դասակարգի հեղափոխական դերի
մարքսյան ուսմունքը բանվորական շարժման բոլոր փուլերում դարձավ պրո-
լետարական կուսակցությունների քաղաքական գլխավոր գծի անկյունաքարը:
**Կոմունիստական կուսակցության մանիֆեստը** ստեղծագործական մարքսիզ-
մի արտահայտությունն է, որն անմիջականորեն առնչվում է բանվորական
շարժման հեղափոխական պրակտիկայի հետ:
Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը հավակնություն չեն ունեցել հարյուր քսան-
հինգ տարի առաջ գուշակելու հեղափոխական զարգացման պրոցեսի բոլոր
մանրամասներն ու ելևէջները: Ավելին, նրանք սպանիչ սարկազմով ծաղրել
են ռեալ իրականությունից կտրված ամեն մի վերացական կոչ, անիրագործելի
ծրագիր:
Վ. Ի. Լենինը, ելնելով գիտական կոմունիզմի հիմնադիրների սկզբունք-
ներից, ստեղծագործաբար զարգացրեց նրանց ուսմունքը իմպերիալիզմի ու
պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի պայմաններում, հա-

մաշխարհային մասշտաբով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում: Սոցիալիստական հեղափոխության լենինյան ստրատեգիան ապահովեց Մեծ հոկտեմբերի հաղթանակը և համաշխարհային-հեղափոխական շարժման հետագա հզոր ծավալումը:

Քսաներորդ դարի սոցիալ-քաղաքական արմատական վերափոխումները անառարկելիորեն վկայում են այն ուղղակի կապի մասին, որ կա արդի բանվորական շարժման և կոմունիստների առաջին ծրագրային փաստաթղթում մարմնավորված գաղափարա-քաղաքական եզրահանգումների միջև:

Իրական սոցիալիզմը հառնում է որպես **Մանիֆեստի** գաղափարների լիակատար մարմնավորում: Սոցիալիստական շինարարության պատմական փորձն իր հերթին հարստացնում է գիտական կոմունիզմի տեսությունը: Իրական սոցիալիզմը բարենպաստ պայմաններ է ստեղծում միջազգային բանվորական և ազատագրական շարժման բոլոր ջոկատների պայքարի համար: Պատմությունը մեր երկրի բանվոր դասակարգի, ողջ աշխատավորության առջև դժվարին, բայց պատվավոր խնդիր էր դրել՝ առաջինը սկսել նոր հասարակարգի կառուցումը: Ինչպես ասված է **Մանիֆեստում**, «...առաջին քայլը բանվորական հեղափոխության մեջ պրոլետարիատին իշխող դասակարգի վերածելն է»: Եվ այդ «առաջին քայլը» կատարվեց մեր երկրում 1917 թ. հոկտեմբերին: Այդ օրվանից անցել են սխրանքներով ու հերոսապատումներով լի տասնամյակներ: Մեր երկրի աշխատավորները կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կյանքի կոչեցին **Մանիֆեստի** հիմնարար սկզբունքները:

Պրոլետարիատի քաղաքական իշխանության հաստատումը և արտադրության միջոցների հանրայնացումը ուղի բացեցին լուծելու **Մանիֆեստում** առաջադրված պատմական խնդիրը՝ հնարավորին չափ արագ զարգացնելու արտադրաուժերը:

Կուսակցությունը, օգտագործելով նոր հասարակարգի ստեղծագործական ուժերը, ժողովրդի աննախադեպ եռանդը, երկիրը դուրս բերեց տնտեսական ու գիտատեխնիկական առաջընթացի լայն մայրուղին: Բավական է ասել, որ այժմ ՍՍՀՄ-ը տալիս է աշխարհի արդյունաբերական արտադրանքի 20 տոկոսը, մեզ մոտ կենտրոնացված է գիտական ուժերի մեկ քառորդը: Սովետական Միությունը սոցիալիստական համագործակցության երկրների հեղափոխական նվաճումների հուսալի պատվարն է, գաղութային լուծը թոթափած և ազգային անկախության համար մարտնչող ժողովուրդների, խաղաղության ուժերի հզոր զորավիգը:

Մեր հասարակության զարգացման արդի փուլում արտադրաուժերի հետագա հուժկու վերելքը կուսակցությունը դիտում է զարգացած սոցիալիստական հասարակարգի տնտեսական ու սոցիալ-քաղաքական ողջ համակարգի կատարելագործման սերտ առնչության մեջ: Կուսակցության ստրատեգիական կուրսը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների օրգանական միացումն է գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հետ: Կյանքը պահանջում է բարձրացնել էկոնոմիկայի արդյունավետությունը, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրմամբ ինտենսիվացնել արտադրությունը, հետևողականորեն արմատավորել կառավարման գիտական մեթոդները:

Հիշյալ խնդիրների լուծումն ապահովում է ո՛չ միայն ընթացիկ հնգամյակի պլանային առաջադրանքների հաջող կատարումը, այլև հիմքեր է ստեղծում երկարաժամկետ տնտեսական առաջընթացի համար: Ավելին, դա նշանակում է ապահովել սոցիալիզմի հաղթանակը համաշխարհային երկու սիստեմների մրցակցության գլխավոր բնագավառներից մեկում՝ գիտատեխնիկական հեղափոխության ոլորտում:

**Մանիֆեստում** Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը բնութագրել են նոր հասարակարգի հումանիստական էությունը: Աշխատավորների նյութական ու հոգևոր պահանջմունքների բուռ ամենալայն բավարարումն ու զարգացումը կոմունիստները դիտում են որպես հասարակական արտադրության բարձրագույն



նպատակը: Կոմունիզմի կառուցման պրոցեսում մեր կուսակցության երեք ծրագրերում կարմիր թելի պես անցնում է աշխատավորների նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել բավարարման, մարդկային անհատի համակողմանի ու ներդաշնակ զարգացման խնդիրը:

ՍՄԿԿ XXIV համագումարը ներկա հնգամյակի հիմնական խնդիրը համարեց աշխատավորության բարեկեցության էական բարձրացումը: Համագումարի որոշումներում շեշտված է երկրի տնտեսական հետագա զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման խնդիրների ողջ կոմպլեքսի բացառիկ կարևորությունը: Միայն գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները լրիվ օգտագործելով կարելի է ապահովել ամբողջ ժողովրդի բարեկեցության հետագա շեշտակի աճը: Միաժամանակ, առանց կենսամակարդակի, կուլտուրայի, կրթության անշեղ վերելքի անհնար է հասնել գիտատեխնիկական հեղափոխության հիմնական՝ մարդկային գործոնի համակողմանի զարգացման:

Հետևողականորեն պայքարելով ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման համար, մեր կուսակցությունը միաժամանակ մշտական ուշադրություն է նվիրում հասարակության հոգևոր հարստության, կուլտուրական արժեքների բազմապատկմանը, սովետական մարդկանց մարքս-լենինյան գաղափարների, բարձր բարոյականության ոգով դաստիարակելուն, նրանց հասարակական ակտիվության զարգացմանը: Կուսակցության սոցիալական քաղաքականությունը կոմունիստական հումանիզմի պերճախոս արտահայտությունն է պրակտիկայում:

Ինտերնացիոնալիզմը, որպես ուսմունք և քաղաքական պլատֆորմ, գիտականորեն հիմնավորվեց **Կոմունիստական կուսակցության մանիֆեստում:** «Ազգերի ներսում եղած դասակարգերի հակամարտության հետ միասին վերանալու են նաև թշնամական հարաբերությունները ազգերի միջև»: Այս հանճարեղ եզրակացությունից պարզ երևում է, որ կոմունիստները ազգային հարցը միշտ դիտել են դասակարգային պայքարի տեսանկյունից, հաստատել, որ դրա լուծումը պետք է ենթարկված լինի հեղափոխության, սոցիալիզմի շահերին: Նոր աշխարհի կերտողները ազգային հարցի մեջ գլխավորը համարում են ազգային պատկանելությունից անկախ աշխատավորների միավորումը ճնշման բոլոր տեսակների դեմ, շահագործումից զերծ նոր հասարակարգի համար մղվող ընդհանուր պայքարում:

Պատմության փորձը վկայում է, որ ազգային հարցը շատ բարդ պրոբլեմ է: Յուրահատուկ պայմանների բերումով այն առանձնապես սուր էր դրված Ռուսաստանում, որտեղ ավելի քան հարյուր ազգեր ու ազգություններ գտնըվում էին հասարակական-տնտեսական և կուլտուրական զարգացման տարբեր աստիճանների վրա: Սովետական բազմազգ պետության կեսդարյա զարգացման պրոցեսում ազգային հարաբերություններում կատարվեց իսկական հեղափոխություն: Հաստատվեց ժողովուրդների պետական միավորման նոր ձև՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միություն, որը պետության մասշտաբով ապահովեց ազգերի ու ժողովուրդների կայուն միասնություն և բարենպաստ պայմաններ ստեղծեց նրանցից յուրաքանչյուրի զարգացման համար: Ազգային հարցի լուծման սովետական փորձն իրոք ունի միջազգային նշանակություն: Լուծված է ազգային հանրապետությունների տնտեսական ու կուլտուրական զարգացման մակարդակների հավասարեցման իր մասշտաբներով ու բարդությամբ աննախադեպ խնդիրը: Ձևավորվեց մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդ: «Մեր կեսդարյա փորձը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը, —ակնբախորեն հաստատում է լենինյան գաղափարները այն առավելությունների վերաբերյալ, որ խոշոր, կենտրոնացված ժողովրդական տնտեսությունը տալիս է մանրատվածի համեմատությամբ: Բոլոր հանրապետությունների տնտեսական հնարավորությունների ու ռեսուրսների միաձուլումը արագացնում է նրանցից յուրաքանչյուրի՝ թե՛ ամենափոքրի և թե՛ ամենախոշորի զարգացումը: Ընդհանուր-միութենական տնտեսավարումը և պլանավորումը հնարավորություն ընձեռեցին

ռացիոնալ մոտեցում ցուցաբերել արտադրաուժերի տեղաբաշխմանը, ապահովեցին տնտեսական մանևրի ազատություն, թույլ տվեցին խորացնել կոոպերացումն ու մասնագիտացումը, որի դեպքում ընդհանուր օգուտը մեծապես գերազանցում է գումարելիների՝ յուրաքանչյուր հանրապետության, շրջանի ու մարզի, ջանքերի սովորական թվաբանական գումարը» (Լ. Ի. Բրեժնև, **ՍՍՀՄ կազմավորման 50 տարին**, 1973, էջ 26—27):

Պրոլետարիատի քաղաքական գերիշխանության հաստատումը, որը հետագայում անվանվեց պրոլետարիատի դիկտատուրա, գիտական կոմունիզմի հիմնադիրները **Մանիֆեստում** դիտում էին որպես դեմոկրատիայի նվաճում: Ներգրավելով բանվոր դասակարգին հասարակության կառավարմանը, ամրապնդելով բանվորա-գյուղացիական դաշինքը, միաձուլելով նրանց հետ աշխատավոր ինտելիգենցիային, պրոլետարիատի դիկտատուրան երկրի աշխատավորներին ներգրավում է պետության կառավարման ոլորտում, ակտիվ մասնակից դարձնում քաղաքական կյանքին: Սոցիալիզմի կենդանի փորձը հիմնովին հերքում է դեմոկրատիան պրոլետարիատի դիկտատուրային, կոմունիստական կուսակցության ղեկավար դերին հակադրելու բուրժուական պրոպագանդայի փորձերը: Կուսակցությունն է, որ խտացված ձևով արտահայտում է ողջ ժողովրդի գերագույն շահերը, ապահովում ժողովրդա-իշխանության էությանը խորթ բյուրոկրատական, տեխնոկրատական, տեղայնության և ուրիշ տենդենցների հաղթահարումը:

Ստեղծելով զարգացած սոցիալիստական հասարակության կառուցման քաղաքական պայմանները, մեր երկրում պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն աստիճանաբար վերաճում է աշխատավորների համաժողովրդական սոցիալիստական պետության, որտեղ ղեկավար ուժը բանվոր դասակարգն է:

Մեր երկրում կատարված սոցիալ-քաղաքական տեղաշարժերը և կյանքի առաջադրած խնդիրներն առաջիկայում արտացոլում կգտնեն ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ: Սովետական ժողովրդի հերոսական ջանքերի արդյունքը հանդիսացավ զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը:

**Մանիֆեստում** Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը պրոլետարիատին մեծ ապագա են կանխատեսել: Այդ հետևությունն իր հաստատումը գտավ ռեալ սոցիալիզմի օրոք՝ միջազգային բանվորական շարժման հաղթանակների մեջ, կապիտալիստական երկրների պրոլետարիատի և գաղութատիրության լուծը թոթափած ժողովուրդների մշտապես ամրապնդվող հակաիմպերիալիստական կողմնորոշման մեջ:

Արդի պայմաններում կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի օբյեկտիվ հնարավորություններն անհամեմատ աճել են և դա, իհարկե, սերտորեն առնչվում է սոցիալիստական սիստեմի, նրա նվաճումների, համաշխարհային զարգացման վրա նրա համակողմանի ազդեցության հետ: Միաժամանակ այն կապիտալիզմի համընդհանուր ճգնաժամի հետագա խորացման արդյունք է: Կապիտալիզմը դարձել է սոցիալական առաջընթացի մեծագույն խոչընդոտը: Հասարակական այդ գոյաձևին պատմությունը վաղուց ի վեր մեղադրական վճիռ է կայացրել: Պատմական այդ արդարացի վճռի իրականացնողը կապիտալիզմի գերեզմանափորն է՝ պրոլետարիատը, հասարակության ամենահեղափոխական դասակարգը: Բանվոր դասակարգն այսօր հսկայական հասարակական ուժ է, որին հավասարը պատմությունը չգիտե: Ինքնին հասկանալի է, որ բանվորների սոցիալական ուժը, ինչպես նկատել է Մարքսը, կապվում է նաև նրանց քանակի հետ:

Բանվոր դասակարգի աճող հնարավորությունների մասին են վկայում նրա կազմում տեղի ունեցող որակական տեղաշարժերը, ժամանակակից հասարակության մեջ գիտատեխնիկական հեղափոխության շնորհիվ նրա դերի մեծացումը: Արդի բանվոր դասակարգի մեջ ամփոփված են մարդկության հսկայական արտադրափորձը, ժամանակի ընթացքում սերունդների կողմից մշակված պրակտիկ հմտությունների և տեխնիկական գիտելիքների գումարը: Գիտատեխնիկական հեղափոխությունն առավելապես բարձրացնում է բան-



վոր դասակարգի դերը, որպես մեր ժամանակի գլխավոր արտադրողական և սոցիալ-քաղաքական ուժի:

Մեր գաղափարական հակառակորդները, բացահայտորեն աղավաղելով գիտատեխնիկական հեղափոխության առաջադրած սոցիալ-տնտեսական տեղաշարժերի բնույթը, ամեն կերպ ճգնում են նսեմացնել բանվոր դասակարգի դերը արդի աշխարհում: Այդ վայ տեսաբանները բանվոր դասակարգին հատկացնում են սոսկ ֆիզիկական աշխատանք կատարելու ֆունկցիա: Ընդ որում, նրանք վկայակոչում են գիտատեխնիկական առաջընթացի հետևանքները, մասնավորապես շեշտելով պրոլետարիատի թվակազմի նվազեցումը, և նույնիսկ՝ անէացումը: Մյուսները բանվոր դասակարգը տարրալուծում են ինչ-որ ամորֆ հանրության մեջ, որտեղ առաջատար դերը հատկացվում է ինտելիգենցիային: «Նոր միջին դասակարգի» ջատագովները այն դիտում են որպես աճող, հեռանկարային սոցիալական ուժ և հակադրում բանվոր դասակարգին: Հիշյալ տեսությունների դասակարգային էությունը հանգում է բանվոր դասակարգի հեղափոխական միսիայի բացասմանը:

Արհմիությունների XV համագումարում Լ. Ի. Բրեժնևը, քննադատելով նման փաստարկումները, ասաց. «Հակառակ հակամարքսիստական այն մոդայական տեսությունների, թե իբր գիտատեխնիկական հեղափոխությունը տանում է դեպի բանվոր դասակարգի սահմանների նեղացում և նույնիսկ նրա վերացում, իրական փաստերը վկայում են ուղիղ հակառակը՝ գիտատեխնիկական առաջադիմությունը ամենուրեք տանում է դեպի բանվոր դասակարգի աճ, այդ թվում՝ ի հաշիվ ժամանակակից արտադրության ծնունդ հանդիսացող նոր մասնագիտությունների»:

Կարևոր է և այն հանգամանքը, որ ամրապնդվում է բանվոր դասակարգի կազմակերպվածությունը: Կապիտալիստական երկրների միլիոնավոր աշխատավորներ ընդգրկված են արհմիություններում, կոմունիստական, սոցիալիստական, սոցիալ-դեմոկրատական կուսակցություններում: Հայտնի է, որ այդ կուսակցությունների միջև գոյություն ունեն խոր, սկզբունքային գաղափարա-քաղաքական տարակարծություններ: Սակայն կոմունիստները հանդես են գալիս հանուն գործողությունների միասնության սոցիալ-դեմոկրատների հետ լայն պլատֆորմով (խաղաղության պաշտպանություն, պայքար ռազմական վտանգի դեմ, սոցիալ-տնտեսական որոշ խնդիրներ): Սոցիալ-դեմոկրատների աջ լիդերները, որոնք ջանում են համագործակցել բուրժուազիայի հետ, արգելքներ են ստեղծում բանվոր դասակարգի բոլոր ջոկատների գործողությունների միասնության համար: Վճռական պայքարը սոցիալ-ռեֆորմիզմի, բոլոր այն ուղղությունների դեմ, որոնք ենթարկում են բանվորական շարժումը մոնոպոլիստական կապիտալի շահերին, անհրաժեշտ պայման է կոմունիստների ու սոցիալ-դեմոկրատների գործողությունների միասնության համար:

Այժմ կապիտալիստական մի շարք երկրներում բարենպաստ պայմաններ են ստեղծվում բանվորական դեմոկրատական շարժման ձախ ուժերի համագործակցության համար: Սոցիալ-դեմոկրատիայի շարքերում ուժեղանում է տրոհման, երկպառակության պրոցեսը:

Անցյալ դարի վերջին կազմակերպված աշխատավորների թիվը հասնում էր մոտավորապես չորս միլիոնի: Այժմ արհմիությունների շարքերում միավորված են— սոցիալիստական երկրներում՝ 150 **մլն,** զարգացած կապիտալիզմի երկրներում՝ 65 և այսպես կոչված «երրորդ աշխարհում»՝ մոտ 40 **մլն** մարդ: Անհրաժեշտ է քանակական աճի հետ մեկտեղ, կապիտալի աշխարհում ամրապնդել արհմիությունների կազմակերպվածությունը, մարտունակությունը, նրանց գործողությունների հակամոնոպոլիստական ուղղվածությունը: Այստեղ, առաջին հերթին, հարկավոր է հաղթահարել այն մասնատվածությունը, որը մեծ խոչընդոտ է արհմիությունների միասնության ճանապարհին:

Պետական-մոնոպոլիստական քաղաքականությունը հանգեցնում է աշխատավոր գյուղացիության քայքայմանը, որի հետևանքով ուժեղանում է վերջինիս դիմադրությունը մոնոպոլիաների դեմ: Բանվոր դասակարգի, աշխա-

տավոր գյուղացիության, մանր և միջին ֆերմերների դաշինքի ամրապնդումը մոնոպոլիստական գերիշխանության դեմ մղվող պայքարի հաջողության հիմնական պայմաններից է: Այդ պայքարում ընդհանուր եզրեր են գտնում մտավոր ու ֆիզիկական ոլորտների աշխատողները, ընդլայնվում է դասակարգային մարտերի սոցիալական բազան: Բանվոր դասակարգը ակտիվորեն մասնակցում է արդի նշանակալից սոցիալական շարժումներին՝ առաջ քաշելով նոր խնդիրներ:

Ժամանակակից հասարակական կյանքի միջազգայնացումը խթանում է դասակարգային պայքարի ծավալմանը: Այդ է վկայում Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիայի, միջազգային ճյուղային արհմիությունների աճող դերը կապիտալի դեմ մղվող պայքարում, խաղաղության շարժման բնագավառում:

Տարբեր երկրների բանվորների ինտերնացիոնալ համերաշխությանը հակադրվում է Պեկինի ներկայիս նացիոնալիստական, շովինիստական պառակտիչ կուրսը: Պեկինի ղեկավարությունն ամեն կերպ ձգնում է նացիոնալիզմ սերմանել ժողովուրդների ու պետությունների միջև, սեպ խրել սոցիալիստական համագործակցության երկրների փոխհարաբերությունների մեջ: Մաոյականների այդ դիրքավորումը ընդհանուր ոչինչ չունի **Մանիֆեստի** գաղափարների, արդի կոմունիստական ու բանվորական շարժման նպատակների հետ:

Այժմ, երբ առկա են խոր սոցիալական տեղաշարժերի համար օբյեկտիվ նախադրյալները, վճռական նշանակություն ունի մարքս-լենինյան կուսակցությունների համագործակցությունը: **Կոմունիստական կուսակցության մանիֆեստի** գաղափարներն իրենց կենդանի մարմնավորումն են գտել ռեալ սոցիալիզմի պատմական հաղթանակների մեջ: Նշելով **Մանիֆեստի** հայերեն հրատարակության յոթանասուն տարին, մենք մեր երախտագիտության խոսքն ենք ուղղում հայ լենինյաններին, որոնք մարքսիզմի գլուխգործոցը դարձրին հարազատ ժողովրդի հոգևոր սեփականությունը:

**Ս. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ**

# ՀԱՍԱՐԱԿԱԳԻՏԱԿԱՆ ԱՌԱՐԿԱՆԵՐԻ ԴԱՍԱՎԱՆԴՈՒՄԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՀԱՄԱՐ

**Մեր կուսակցությունը անդուլ հոգատարություն է հանդես բերում ապագա մասնագետներին արդիականության ամենահզոր ուսմունքով՝ գիտական կոմունիզմի գաղափարներով զինելու համար: Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը քննարկեց «Հասարակական գիտությունների դասավանդման գաղափարա-տեսական որակի բարձրացման ուղղությամբ Մոսկվայի Ն. Է. Բաումանի անվան բարձրագույն տեխնիկական ուսումնարանում և Սարատովի Ն. Գ. Չերնիշևսկու անվան պետական համալսարանում կատարվող աշխատանքի մասին» հարցը: Այդ առթիվ ընդունված որոշումը լայն արձագանք գտավ բուհական հաստատություններում, գաղափարական ոլորտի բոլոր աշխատողների շրջանում:**

**Հանրապետության բուհերի ռեկտորատները, կուսկոմիտեներն ու հասարակագիտական ամբիոնները, ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջներից, գործնական քայլեր են ձեռնարկում նոր ուսումնական տարում հասարակական գիտությունների դասավանդման գաղափարա-տեսական որակի բարձրացման ասպարեզում: ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հսկայական կարևորության, հասարակագիտական ամբիոնների անելիքների վերաբերյալ իրենց նկատառումների մասին են պատմում հեղինակները ստորև տպագրվող հոդվածներում:**

## ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐԸ

Փ. Ի. ԵՆԳՈՅԱՆ
Երևանի պետական համալսարանի ՍՄԿԿ
պատմության ամբիոնի վարիչ, պրոֆեսոր

*1974 թ. հունիսին ՍՄԿԿ Կենտկոմը որոշում ընդունեց «Հասարակական գիտությունների դասավանդման գաղափարա-տեսական որակի բարձրացման ուղղությամբ Մոսկվայի Ն. Է. Բաումանի անվան բարձրագույն տեխնիկական ուսումնարանում և Սարատովի Ն. Գ. Չերնիշևսկու անվան պետական համալ-*

սարանում կատարվող աշխատանքի մասին»: Աշխարհայացքային առարկաների դասավանդումը բարելավելու և ուսանող երիտասարդությանը մարքս-լենինյան գաղափարներով զինելու նպատակով, Կենտկոմն իր այս որոշմամբ նոր խնդիրներ է առաջադրում ՍՍՀՄ բոլոր բուհական կազմակերպություններին, հասարակագիտական առարկաներ դասավանդող մասնագետներին, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության ամբողջ համակարգին:

Որոշման մեջ նշվում է, որ հասարակական գիտությունների դասախոսները կոչված են տեսությունն ավելի սերտորեն շաղկապել կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ, կուսակցության ժամանակակից քաղաքական և կազմակերպչական գործունեության հետ, հաստատակամորեն հասնել այն բանին, որ բարձրագույն դպրոցի յուրաքանչյուր շրջանավարտ ստեղծագործաբար տիրապետի մարքս-լենինյան տեսությանը, ունենա կոմունիստական համոզմունքներ, բարոյական վեհ հատկություններ, լինի ջերմ հայրենասեր և ինտերնացիոնալիստ, կոմունիստական կուսակցության քաղաքականության իրականացման համար պայքարող հետևողական մարտիկ: Այդ խնդիրները լուծելու համար Կենտկոմը պարտավորեցնում է առավել կատարելագործել հասարակագիտական առարկաների դասավանդման մեթոդիկան, մշտապես հոգալ դասախոսությունների նորացման ու հարստացման, դրանցում կոմունիստական շինարարության, համաշխարհային հեղափոխական պրոցեսի, ժամանակակից պայմաններում գաղափարական պայքարի հրատապ պրոբլեմների խոր լուսաբանման մասին, ավելի վառ ու մատչելի ներկայացնել զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանի օրինաչափությունները, համակողմանիորեն ցույց տալ կոմունիստական կուսակցության ղեկավար դերը, զարգացման արդի պրոբլեմները վերլուծելու ժամանակ միշտ կիրառել կուսակցական ու դասակարգային մոտեցման սկզբունքը:

Մոսկվայի բարձրագույն տեխնիկական ուսումնարանի և Սարատովի պետական համալսարանի հասարակագիտական ամբիոնների աշխատանքում տեղ գտած այն թերություններն ու բացերը, որոնց մասին խոսվում է Կենտկոմի որոշման մեջ, շատ բանով բնորոշ են նաև մեր հանրապետության հասարակագիտական ամբիոնների համար: Վերջին տարիներին անցկացված միջբուհական և միջամբիոնային փոխադարձ դասալսումների արդյունքները ցույց են տալիս, որ մեր հանրապետության բուհերի, այդ թվում և պետական համալսարանի հասարակագիտական ամբիոնների ոչ բոլոր դասախոսներն են կարողանում դասավանդվող նյութը շարադրել խոր, վառ ու մատչելի: Որոշ դասախոսներ կուսակցության պատմության կարևոր հարցերը շատ հաճախ շարադրում են առանց պատշաճ փաստարկումների ու գիտական ընդհանրացումների, երբեմն մոռացության են տալիս տեսության ու պրակտիկայի կապը:

Հասարակագիտական ամբիոնների դասախոսների զգալի մասի մոտ դեռևս նկատվում են մեթոդական կարգի թերություններ, որոնք իրենց բացասական ազդեցությունն են թողնում դասավանդվող նյութի յուրացման վրա: Ընդ որում, այդ կարգի թերություններ նկատվում են ո՛չ միայն սկսնակ, այլև երկարամյա փորձ ունեցող դասախոսների մոտ:

Կենտկոմի որոշումը անթերի կենսագործելու համար հասարակագիտական ամբիոններից, առաջին հերթին նրանց վարիչներից, պահանջվում է ավելի արդյունավետ ու գործարար դարձնել գիտա-մեթոդական աշխատանքը և դրանով իսկ մի կողմից բարձրացնել դասախոսների գիտա-մասնագիտական պատրաստականությունը, մյուս կողմից կատարելագործել նրանց մանկավարժական վարպետությունը: Դրանք դասախոսին բնութագրող երկու կարևոր պայմաններն են, որոնց վրա Կենտրոնական կոմիտեն հրավիրում է ամբիոնների ուշադրությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջներից ելնելով, Երևանի պետական համալսարանի քաղաքատնտեսության, ՍՄԿԿ պատմության, դիալեկտիկական մատերիալիզմի, պատմական մատերիալիզմի, փիլիսոփայության պատմության և գիտական կոմունիզմի ամբիոններն իրենց դասախոսների գիտա-մանկավարժական մակարդակն առավել բարձրացնելու նպատակով նախանշել են մի շարք միջոցառումներ, որոնք պետք է քննարկվեն ամբիոնների, ռեկտորատի ու կուսակցական կոմիտեի համատեղ նիստում և իրականացվեն նոր ուսումնական տարում:

Խիստ էական պահանջներ են ներկայացվում մարքս-լենինյան աշխարհայացքի ուսուցման մյուս օղակի՝ սեմինար պարապմունքների որակի բարձրացման նկատմամբ: Որոշման մեջ ընդգծվում է, որ սեմինար պարապմունքները պետք է անցկացվեն սկզբնաղբյուրների, գիտական գրականության խոր ուսումնասիրության հիման վրա և բեղմնավոր դիսկուսիաների ձևով:

Սեմինարի ժամանակ պետք է պրակտիկա դառնան ուսանողների ռեֆերատների ու զեկուցումների գործարար քննարկումները:

Ինքնաքննադատաբար ասենք, որ սեմինար պարապմունքների պրակտիկայում նկատված թերությունները, որոնց մասին խոսվում է որոշման մեջ, ամբողջովին վերաբերում են նաև մեր հանրապետության հասարակագիտական ամբիոններին: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ոչ բոլոր դասախոսներն են կարողանում սեմինար պարապմունքների ժամանակ ակտիվություն առաջ բերել և արդյունավետ քննարկել ուսումնասիրվող թեմաները: Հաճախ դասախոսի ոչ պահանջկոտ վերաբերմունքի պատճառով սեմինար պարապմունքներն անցնում են անհետաքրքիր: Երբեմն էլ դրանք վերածվում են դասախոսությունների:

Կասկածից վեր է, որ նոր ուսումնական տարում սեմինար պարապմունքների որակի բարձրացումը ևս կդրվի հասարակագիտական ամբիոնների ուշադրության կենտրոնում:

Բարձրագույն ուսումնական հաստատություններում հասարակական գիտությունների դասավանդման գաղափարա-տեսական որակի բարձրացման գրավականներից մեկը գիտա-մանկավարժական կադրերի պատրաստումն է: Կենտկոմը խնդիր է դնում՝ բարելավել ամբիոնների կոմպլեկտավորումը որակյալ պրոֆեսորա-դասախոսական կազմով և կադրերի պատրաստման որակը՝ ասպիրանտուրայի միջոցով:

ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության կողմից ստեղծված ատեստացիոն հանձնաժողովի ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ հասարակագիտական ամբիոնները պրոֆեսորա-դասախոսական կադրերով կոմպլեկտավորելու գործում մեր հանրապետության բուհերում նույնպես կան էական թերություններ: Հաճախ ամբիոնները կադրերի ընտրության հարցում ցուցաբերում են շտապողականություն և, առանց նրանց գիտելիքներն ու մանկավարժական ունակությունները ջանադիր ստուգելու, ինքնուրույն կուրս վարելու իրավունք են տալիս մարդկանց, որոնք դեռևս լիովին պատրաստ չեն ժամանակակից պայմաններում դասախոսին ներկայացվող պահանջները բավարարելու:

Հասարակական գիտությունների ասպարեզում ինքնուրույն կուրս վարող դասախոսներից պահանջվում է ունենալ հարուստ գիտելիքներ ոչ միայն մարքսիզմի մեկ, այլև նրա բոլոր բաղկացուցիչ մասերի վերաբերյալ: Նա պետք է քաջատեղյակ լինի սոցիալիզմի երկրներում, ամբողջ աշխարհում կատարվող անցուդարձին, հասարակական ու քաղաքական տեղաշարժերին: Մինչդեռ մեզանում հաճախ ինքնուրույն կուրս վարելու իրավունք է տրվում մարդկանց, որոնք առանց մասնագիտական կուրս անցնելու ձեռք են բերում գիտական աստիճան, բայց բազմակողմանիորեն չեն տիրապետում դասավանդվող առարկային: Ավելին, մինիստրության ատեստացիոն հանձնաժողովը բացահայտեց դեպքեր, երբ դասախոսական աշխատանքի են առաջ քաշվել մարդիկ, որոնք դասավանդում են այլ առարկա, իսկ գիտական աշխատանք են կատարում մեկ այլ առարկայի գծով:

Վերջին տարիներին հասարակական գիտությունների ամբիոնները կոմպլեկտավորելու գործում մեզ մոտ նկատվում է նաև մեկ այլ արատավոր միտում: Հաճախ, վերադաս օրգանների գիտությամբ, դասախոսական աշխատանքի են նշանակվում այլ բնագավառներում իրենց վարկաբեկած մարդիկ,

իսկ դա չի կարող բացասաբար չանդրադառնալ դաստիարակության բուն պրոցեսի վրա։

Հասարակական գիտությունների ամբիոնները կոմպլեկտավորելիս, բացի գիտական ու մանկավարժական նկատառումներից, կադրերին պետք է ներկայացվեն նաև այլ կարգի պահանջներ, որոնք վերաբերում են նրանց քաղաքացիական, հասարակական ակտիվությանը, բարոյական արժանիքներին և, որ ամենակարևորն է, նվիրվածությանն ու հավատին այն իդեալներին ու սկզբունքներին, որոնց պրոպագանդային նա նվիրում է իրեն։

Կենտրոնական կոմիտեի որոշման մեջ կարևոր տեղ է տրված նաև հասարակական գիտությունների ամբիոններին կից կաբինետների գործունեության աշխուժացմանը։ Այդ մասին որոշման մեջ մասնավորապես ասված է՝ ակտիվացնել հասարակական գիտությունների կաբինետների գործունեությունը ուսանողների ինքնուրույն աշխատանքը կազմակերպելու ասպարեզում, կաբինետներն ապահովել ուսուցման ժամանակակից տեխնիկական միջոցներով և դիտողական պարագաներով։

Պետք է խոստովանել, որ մեր հասարակագիտական ամբիոններում նույնպես դասավանդման պրոցեսում չեն օգտագործվում կամ քիչ են օգտագործվում կինոն, հեռուստատեսությունը և ժամանակակից տեխնիկական միջոցներն ու դիտողական պարագաները, որոնք դասավանդվող նյութը դարձնում են տպավորիչ, դյուրըմբռնելի, պատկերավոր։ Ուսուցման համար կարևոր նշանակություն ունեցող այդ խնդիրը կարող է լուծվել միայն ամբիոնների, բարձրագույն ուսումնական հաստատությունների ռեկտորատների և մինիստրության մեթոդական կաբինետների համատեղ ջանքերով։ Երևանի պետական համալսարանում այս ուղղությամբ արվում են առաջին քայլերը։ Նոր ուսումնական տարում մեզ մոտ կստեղծվեն ժամանակակից տեխնիկական միջոցներով կահավորված երկու մասնագիտացված լսարան։

Կենտրոնական կոմիտեն հասարակագիտական ամբիոնների ուշադրությունը հրավիրում է նաև գիտական հետազոտությունների տեսական մակարդակի հետագա բարձրացման, կոմպլեքսային հրատապ պրոբլեմների, դասավանդման մեթոդիկայի և երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցերի մշակման վրա։

Գիտահետազոտական աշխատանքը բոլոր բուհական ամբիոնների կարևոր ու հիմնական բնագավառներից է։ Վաղուց հերքված է այն սխալ կարծիքը, թե իբր բուհական ամբիոնների համար գլխավորը մանկավարժական գործունեությունն է, իսկ գիտականը երկրորդական խնդիր է։ Գիտական աշխատանքը բուհական ամբիոնների համար անհրաժեշտ է ու պարտադիր ոչ միայն զուտ գիտական-ստեղծագործական, այլև մանկավարժական տեսակետից։ Գիտահետազոտական աշխատանքը հարստացնում է դասախոսի գիտելիքները, պատրաստում նրան լսարանի համար, խորացնում տրամաբանությունը, վերլուծություններ ու մեկնաբանություններ անելու կարողությունը։ Անշուշտ, մեր հասարակագիտական ամբիոնները զգալի ծավալով գիտահետազոտական աշխատանք են կատարում, սակայն պետք է ընդունել, որ մենք դեռևս անբավարար ենք զբաղվում կոմունիստական դաստիարակության և դասավանդման մեթոդիկայի հարցերի մշակմամբ, որոնց մասին նշվում է Կենտկոմի որոշման մեջ։

Հասարակական գիտությունների ամբիոնների գիտահետազոտական աշխատանքի թեմատիկան պետք է լինի առավելապես այժմեական և բխի մեր երկրում կոմունիստական շինարարության խնդիրներից ու նպատակներից։



Բարձրագույն ուսումնական հաստատությունների հասարակական գիտությունների ամբիոնների գործունեության ոլորտն ընդգրկում է մարդկային լայն զանգվածներ, նրանց ամենօրյա աշխատանքին առնչվում են տվյալ կոլեկտիվի բոլոր անդամները։ Այդ իսկ պատճառով նրանց մանկավարժական, գաղափարական դաստիարակչական աշխատանքն ու գիտական գործունեությունը միշտ ընթանում են տվյալ ուսումնական հաստատության կուսակցական, հասարակական կազմակերպությունների և վարչական ապարատի գործունեության համատեղ։ Կենտրոնական կոմիտեն միանգամայն իրավացիորեն ռեկտորատներին հանձնարարում է ամեն կերպ օգնել հասարակագիտական ամբիոնների դասախոսների ուսումնա-մեթոդական գործունեության կատարելագործմանը, իսկ կուսակցական ու կոմերիտական կազմակերպություններին պարտավորեցնում է ամրապնդել կապը նրանց հետ և ստեղծագործական ակտիվության մթնոլորտ ստեղծել ուսանողական խմբերում։

Հասարակական գիտությունների դասավանդման գաղափարա-տեսական որակի բարձրացման վերաբերյալ Կենտկոմի նոր որոշումը ամբողջապես ելնում է գաղափարական աշխատանքի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրներից, և նրա կենսագործումը մեծ չափով կնպաստի հասարակական գիտությունների դասավանդման գործի բարելավմանը։ Մեզ՝ հասարակական գիտությունների դասախոսներիս համար Կենտկոմի որոշումը ծրագրային փաստաթուղթ է, որն այսուհետև դրված կլինի բոլոր հասարակագիտական ամբիոնների գործունեության հիմքում։

# ԾՐԱԳՐԱՅԻՆ ՓԱՍՏԱԹՈՒՂԹ

**Վ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆ**
Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի մարքս-լենինյան փիլիսոփայության և գիտական կոմունիզմի ամբիոնի դոցենտ, փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ՍՄԿԿ Կենտկոմի որոշման նշանակությունը բնավ չի սահմանափակվում այն երկու բարձրագույն ուսումնական հաստատությունների շրջանակներով, որոնց անմիջականորեն վերաբերում է: Որոշման մեջ շարադրված դրույթներն ու հետևությունները, արծարծված խնդիրները ծրագրային նշանակություն ունեն երիտասարդ մասնագետների մարքս-լենինյան կրթության ամբողջ սիստեմի կատարելագործման, երկրի բարձրագույն ուսումնական հաստատություններում հասարակական գիտությունների դասավանդման և ուսանող երիտասարդության քաղաքական-գաղափարական դաստիարակության հետագա բարելավման համար: Բարձրագույն ուսումնական հաստատությունների ռեկտորատները, կուսկազմակերպությունները և հասարակական գիտությունների դասախոսները ստացան կուսակցական մի կարևոր փաստաթուղթ, որը նոր ուղիներ է բացում հասարակական գիտությունների դասավանդման գաղափարական-տեսական մակարդակի հետագա բարձրացման, ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակության բարելավման համար: Այն բովանդակությամբ լրացնում է գաղափարական աշխատանքի մասին կուսակցության XXIV համագումարի փաստաթղթերում և 1967 թ. օգոստոսին ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած «Հասարակական գիտությունների հետագա զարգացման և կոմունիստական շինարարության ասպարեզում նրանց դերի բարձրացման միջոցառումների մասին» որոշման մեջ առաջ քաշված դրույթները: Կենտկոմի այս որոշումը մի նոր վկայություն է այն մասին, թե կուսակցությունը ինչպիսի մեծ նշանակություն է տալիս ուսանող երիտասարդության, ապագա մասնագետների քաղաքական-տեսական դաստիարակությանը, այդ գործում հասարակական գիտությունների դերին:*

*Կոմունիստական շինարարության խնդիրները պահանջում են մշտապես կատարելագործել մասնագետների պատրաստումը, աճեցնել այնպիսի կադրեր, որոնք հմտորեն զուգակցեն մարքս-լենինյան համոզվածությունն ու մասնագիտական վարպետությունը, կոլեկտիվի աշխատանքը խելացիորեն կազմակերպելու կարողությունը, բարձր կուլտուրան ու լայն մտահորիզոնը: Կուսակցությունը պահանջում է հաստատակամորեն հասնել այն բանին, որ բարձրագույն դպրոցի յուրաքանչյուր շրջանավարտ ստեղծագործաբար տիրապետի մարքս-լենինյան տեսությանը, ձգտի մշտապես համալրելու և խորացնելու իր գիտելիքները, ունենա կոմունիստական համոզմունքներ, բարոյական վեհ հատկություններ, լինի ջերմ հայրենասեր և ինտերնացիոնալիստ, բուրժուական գաղափարախոսության դեմ, կոմունիստական կուսակցության քաղաքականության իրականացման համար պայքարող հետևողական մարտիկ: Լ. Ի. Բրեժնեւ ՀամԼԿԵՄ XVII համագումարում նշեց. «...կարևոր է, որ երիտասարդության կողմից մարքս-լենինյան տեսության ուսումնասիրումը չհանգեցվի պատրաստի հետևությունների սերտման, այլ օգնի ինքնուրույնաբար դատելու, լուծելու հրատապ պրոբլեմները, տեսնելու հասարակական զարգացման օրինաչափությունններն ու հեռանկարները, անհաշտ պայքար մղելու բուրժուական գաղափարախոսության դեմ»:*



*Հասարակական գիտությունների դասավանդման գաղափարական-տեսական որակի բարձրացման գործում Կենտկոմի որոշումը կարևոր տեղ է հատկացնում հատկապես դասախոսությունների և սեմինար-պարապմունքների մակարդակի բարձրացմանը: Որոշմամբ պահանջվում է անշեղորեն բարձրացնել դասախոսությունների դերը, դրանց որակը, մշտապես կատարելագործել սեմինար-պարապմունքների՝ սկզբնաղբյուրների, գիտական գրականության վրա ուսանողների կողմից կատարվող ինքնուրույն աշխատանքի այդ կարևորագույն ձևի անցկացումը: Որոշման մեջ առանձնապես ընդգծվում է ուսանողների մեջ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների, ՍՄԿԿ-ի և միջազգային կոմունիստական շարժման փաստաթղթերի ինքնուրույն ուսումնասիրման պահանջմունքներ ու հմտություններ ձևավորելու անհրաժեշտությունը: Հարկավոր է հասնել այն բանին, որպեսզի ուսանողները ո՛չ միայն գիտելիքներ ձեռք բերեն մարքս-լենինյան տեսությունից, այլև այդ գիտելիքները վերածվեն համոզմունքի, սերտորեն կապվեն կոմունիզմի կառուցման պրակտիկ խնդիրների իրականացման հետ, նպաստեն սովորողների քաղաքական ակտիվության բարձրացմանը:*

*Վերջին տարիներին հայկական գյուղատնտեսական ինստիտուտում նույնպես զգալի աշխատանք է կատարվել հասարակական գիտությունների դասավանդման, ուսանող երիտասարդության քաղաքական-գաղափարական դաստիարակության բարելավման ասպարեզում: Նկատելիորեն բարձրացել է ուսանողների հետաքրքրասիրությունը մարքս-լենինյան տեսության ուսումնասիրման նկատմամբ: Այդ է վկայում այն փաստը, որ ուսանողների մեծ մասը սեմինար պարապմունքներին ներկայանում է հանձնարարված գրականությունը խնամքով կոնսպեկտավորած և ակտիվ մասնակցում է պարապմունքներին: Սովորողները սերտորեն կապված են ուսումնական կաբինետների հետ, մշտապես օգտվում են եղած գրականությունից: Վերջին մի քանի տարում մեզ մոտ հասարակական գիտությունների մարզում առաջադիմությունը կազմում է 92—99,9 տոկոս: Այն բարձր է հատկապես գիտական կոմունիզմի, մարքս-լենինյան փիլիսոփայության և ՍՄԿԿ պատմության ոլորտում:*

*Ինստիտուտի ռեկտորատը և կուսակցական կոմիտեն մշտապես իրենց տեսադաշտում են պահում հասարակական գիտությունների ամբիոնների աշխատանքը, պարբերաբար քննարկում դրանց գործունեության բարելավման հետ առնչվող հարցեր, օգնում են ուսումնական կաբինետների կահավորմանը և գրականության ֆոնդի հարստացմանը: Ռեկտորի նախագահությամբ գործում է հասարակագիտական ամբիոնների խորհուրդ, որի նիստերում քննարկվում են դասախոսությունների որակի բարձրացման, սեմինար-պարապմունքների կատարելագործման, ուսումնական կաբինետների աշխատանքների, ուսանողների քաղաքական-գաղափարական դաստիարակության բարելավման և ուսումնամեթոդական այլ հարցեր: Հասարակական գիտությունների դասավանդման և ամբիոնների աշխատանքի բարելավման հետ կապված հարցերը քննարկվում են նաև ինստիտուտի և ֆակուլտետների գիտական խորհուրդներում:*

*Մեծ ուշադրություն է նվիրվում ամբիոնների դասախոսական կազմի կոմպլեկտավորման և դասախոսների որակավորման բարձրացման խնդիրներին: Վերջին 3—4 տարում հասարակագիտական ամբիոնների յոթ դասախոսներ համապատասխան դասընթացներ են անցել Մոսկվայի և Կիևի համալսարաններին կից հասարակական գիտությունների դասախոսների որակավորման բարձրացման ինստիտուտներում: Զգալիորեն բարելավվել է ամբիոնների դասախոսների որակական կազմը:*

*Արդեն երրորդ տարին է, ինչ ինստիտուտում կազմակերպված է հասարակական-քաղաքական պրակտիկում, որը կարևոր նշանակություն ունի ուսանողների գաղափարական դաստիարակության, արտադրական պրակտիկայի վայրերում տեղական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական և կուլտուր-մասսայական աշխատանքներին նրանց ակտիվ մասնակցությունն*

ապահովելու գործում: Հասարակական-քաղաքական պրակտիկումը դառնում է
ուսանող երիտասարդության դաստիարակության կարևոր օղակներից մեկը:
Սովորողներն ավելի ակտիվորեն են մասնակցում հասարակական գիտություն-
ների բնագավառում ուսանողական գիտական աշխատանքների համա-
միութենական մրցույթին, մեծանում է գիտական ընկերության աշխատանքնե-
րում ընդգրկվածների թիվը:
Ուսանողների աշխատանքային դաստիարակությանը մեծ չափով նպաս-
տում է շինարարական ջոկատներում նրանց ընդգրկելը: Տարեկան 200—300
ուսանողներ շինարարական ջոկատներում հայրենանվեր աշխատանք են կա-
տարում երկրի տարբեր շրջաններում՝ միշտ արժանանալով տեղական կու-
սակցական և սովետական օրգանների սահմանած մրցանակներին ու շնորհա-
կալագրերին:
Այդ ամենից, իհարկե, չի հետևում, թե մեր ինստիտուտում հասարակա-
կան գիտությունների դասավանդման, ուսանողների գաղափարական-տեսա-
կան դաստիարակության գործում ամեն ինչ անթերի է: ՍՄԿԿ Կենտկոմի որոշ-
ման մեջ նշված թերությունները բավական բնորոշ են նաև մեր ինստիտուտին:
Այդ կարգի թերություններ բացահայտվել են ինստիտուտի ռեկտորատի, կուս-
կոմիտեի, գիտական խորհուրդների, հասարակագիտական ամբիոնների խոր-
հրդի նիստերում, միջոցներ են ձեռնարկվել դրանց վերացման համար: Կա-
րևորն այն է, որ ինստիտուտում ջանք չի խնայվում ուսումնա-մեթոդական
գործունեության մշտական կատարելագործման, դասախոսությունների բովան-
դակության սիստեմատիկ բարձրացման, սեմինար-պարապմունքների անց-
կացման մեթոդիկայի բարելավման, դասախոսների մասնագիտական որակա-
վորման և մանկավարժական վարպետության բարձրացման համար:
Ողջունելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը և լիովին հավանություն տալով
դրանում առաջ քաշված դրույթներին ու հետևություններին, մենք կցանկանա-
յինք որոշ առաջարկություններ անել, որոնք, մեր կարծիքով, բխում են այդ
որոշման ոգուց և որոնց հաշվի առնելը կնպաստեր հասարակական գիտու-
թյունների դասավանդման հետագա բարելավմանը, Կենտկոմի որոշման կեն-
սագործմանը:
ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ընդգծվում է մարքսիզմ-լենինիզմի կլա-
սիկների աշխատությունների խոր ուսումնասիրման և յուրացման կարևորու-
թյունը: Սակայն ուսումնական ծրագրերում այդ աշխատությունների վերա-
բերյալ առանձին դասախոսություններ և սեմինար-պարապմունքներ չեն նա-
խատեսված: Ուսումնական ծրագրերի չափազանց խտացման պատճառով սե-
մինար-պարապմունքների համար նախատեսված թեմաների վերաբերյալ
մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատություններից միայն առանձին էջեր
են հանձնարարվում, որի հետևանքով ուսանողները փաստորեն ամբողջական
պատկերացում չեն կազմում այդ աշխատությունների մասին: Մեր կարծիքով,
մարքսիզմ-լենինիզմի կլասիկների հիմնական աշխատությունների վերաբեր-
յալ ուսումնական ծրագրերում անհրաժեշտ է նախատեսել և՛ դասախոսու-
թյուններ, և՛ սեմինար-պարապմունքներ:
Այնուհետև, հումանիտար բուհերում (համալսարաններում, մանկավար-
ժական ինստիտուտներում և այլն) հասարակական գիտություններն ուսումնա-
սիրվում են լայն ծրագրերով (օրինակ, մարքս-լենինյան փիլիսոփայությանը
հատկացվում է 140 ժամ), իսկ գյուղատնտեսական ու տեխնիկական բուհերում՝
խտացված ծրագրով (90 ժամ): Մեզ թվում է, որ դա տրամաբանական չէ: Գյու-
ղատնտեսական և տեխնիկական բուհերում բացի հասարակական գիտություն-
ներից հումանիտար այլ դիսցիպլիններ չեն ուսումնասիրվում, ուստի և հասա-
րակական գիտությունները պետք է դասավանդվեն լայն ծրագրերով: Հարկա-
վոր է հաշվի առնել նաև այն հանգամանքը, որ այդ բուհերն ավարտելուց հե-
տո մարդիկ շարունակում են աշխատանքի պրոցեսում ավելի խորանալ իրենց
մասնագիտության մեջ, իսկ հասարակական գիտությունների ուսումնասիր-
մամբ նրանք միշտ չէ, որ սիստեմատիկ զբաղվելու հնարավորություն ունեն:
Լիովին հավանություն տալով բոլոր բուհերում հասարակական գիտու-



թյուններից պետական քննություն մտցնելու կարծիքին, մենք գտնում ենք,
որ պետական քննության առարկան որոշելիս պետք է ելնել բուհի պրոֆիլից:
Օրինակ, գյուղատնտեսական ինստիտուտներում հավանաբար ավելի նպատա-
կահարմար է պետական քննություն մտցնել մարքս-լենինյան փիլիսոփայու-
թյունից: Մեր այս առաջարկությունը հիմնավորում ենք հետևյալ կերպ. համա-
ձայն Կենտկոմի որոշման, բուհերում մարքս-լենինյան փիլիսոփայության ու-
սուցումը պետք է հասցվի 2 տարվա, որի շնորհիվ հնարավոր կլինի ավելի հա-
մակողմանիորեն ուսումնասիրել մարքսիզմ-լենինիզմի կլասիկների հիմնական
աշխատությունները, լավ տիրապետել դիալեկտիկական-մատերիալիստական
աշխարհայացքին: Միանգամայն ճիշտ կլիներ պետական քննության միջոցով
ստուգել, թե շրջանավարտները ինստիտուտի լրիվ դասընթացն ավարտելուց
հետո որքանով են կարողանում ճիշտ ըմբռնել մարքս-լենինյան մեթոդոլո-
գիան, ինչպես են կարողանում դրա հիման վրա իմաստավորել ու ընդհանրաց-
նել իրենց ուսումնասիրած մասնագիտական առարկաների նվաճումները:
Մարքս-լենինյան փիլիսոփայությունից պետական քննություն հանձնելը կօգնի
նաև ապագա ասպիրանտներին և հայցողներին՝ ավելի հաջող հանձնելու թեկ-
նածուական մինիմումը:
Անհրաժեշտ է նաև վերանայել հասարակական գիտությունների դասա-
վանդման ասպարեզում որոշ ուսումնական պլաններ, համամասնություն սահ-
մանել ուսումնական տարվա տարբեր կիսամյակներում ուսումնասիրվող նյու-
թերի ծավալների միջև: Ներկայումս գործող ուսումնական պլաններով գյուղա-
տնտեսական ինստիտուտի ագրոնոմիական և այգեգործական ֆակուլտետնե-
րում երկրորդ կուրսի առաջին կիսամյակում դիալեկտիկական մատերիալիզմի
համար հատկացված է ընդամենը 28 ժամ՝ ծրագրով նախատեսված 54-ի փո-
խարեն: Ուսանողները պետք է քննություն հանձնեն այդ 28 ժամերի ընթաց-
քում անցած փոքր ծավալի նյութից, իսկ մնացածը պետք է անցնեն երկրորդ
կիսամյակում պատմական մատերիալիզմի ամբողջ դասընթացի հետ և քըն-
նություն հանձնեն այդ բոլորից: Այս հանգամանքը ոչ նորմալ վիճակ է ստեղ-
ծում և դժվարության առջև կանգնեցնում ուսանողներին, որի պատճառով ուս-
ման առաջադիմությունը այդ ֆակուլտետներում երկրորդ կիսամյակում ընկ-
նում է: Կենտկոմի որոշումից բխում է, որ պետք է վերացնել նաև ուսումնա-
կան պլաններում տեղ գտած նման սխալները:
Կենտկոմի որոշման մեջ նշվում է նաև, որ հասարակական գիտություննե-
րի դասավանդման ժամանակ անհրաժեշտ արտացոլում չեն գտնում կոմունիս-
տական բարոյականությանը, սովետական ապրելակերպին հակասող երևույթ-
ների նկատմամբ անհանդուրժողական վերաբերմունքի դաստիարակման հար-
ցերը: Մեր կարծիքով այդ թերությունները կարելի կլիներ վերացնել, եթե
պատշաճ մակարդակի վրա դրվեր մարքս-լենինյան էթիկայի և էսթետիկայի
դասավանդումը բուհերում:

# ՖՈՒՏՈՒՐՈԼՈԳԻԱՆ ԲՈՒՐԺՈՒԱԶԻԱՅԻ ՊԱՇՏՊԱՆԻ ԴԵՐՈՒՄ

**Մ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

Մարդկության առաջադեմ ներկայացուցիչները, սկսած հին ժամանակներից, որոնել են հասարակությունը մարդասիրական սկզբունքներով վերակառուցելու ուղիներ: Այդ որոնումների մեջ կարևորագույն պրոբլեմներից մեկը միշտ եղել է մարդու ապագայի կանխորոշման խնդիրը:

Հասարակության վերափոխման հարցերին առաջինը գիտական պատասխան տվեց մարքսիզմը, որը և բացահայտեց հասարակական այն ուժը, որ կարող էր դառնալ և դարձավ նոր հասարակարգի ստեղծողը:

Բուրժուազիայի գաղափարախոսները միաժամանակ կապիտալիստական հասարակարգը սոցիալիստականի վերափոխելու մարքսյան ուսմունքը համարում էին ուտոպիա: Նույնիսկ ոչ վաղ անցյալում նրանք ընդհանրապես անիմաստ էին համարում սոցիալական ամեն մի կանխատեսում: Բայց կյանքը կապիտալիզմի ջատագովներին ստիպեց հաշվի նստել ռեալ իրականության հետ: Վերջին ժամանակներս բուրժուական գիտնականների համար ապագայի կանխատեսումներով զբաղվելն արդեն մոդայիկ է դարձել: Ապագայի վերաբերյալ հետազոտությունները ներկայումս կազմում են բուրժուազիայի գաղափարական և քաղաքական պայքարի զինամիջոցների էական տարրը: Այդ բանին են մղում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի տնտեսական, քաղաքական և պատմական նոր պայմանները: Արդի դարաշրջանում աննախընթաց չափերով սրվել են կապիտալիզմի բոլոր հակասությունները, ուժեղացել է ֆինանսական ճգնաժամը, խորացել քաղաքական ռեակցիան: Բուրժուական հասարակության քայքայվող բարոյական հիմքերին սոցիալիզմը հակադրում է հանրության և անհատի հոգևոր վերընթացի իր ընձեռած հնարավորությունները: Կապիտալի գաղափարախոսներն այդ իրողությունն անտեսել չեն կարող և, ստիպված, փնտրում են սոցիալիզմի ու կապիտալիզմի ուժերի փոփոխված հարաբերությունների պայմաններին հարմարվելու ուղիներ:

Բուրժուական տնտեսագետներն ու սոցիոլոգները գրում են մեծաթիվ աշխատություններ, որոնցում փորձում են կանխագուշակել առաջիկա տասնամյակներում հասարակական-քաղաքական կյանքի ընթացքը: Այդ հիման վրա մեր օրերում առաջացել է բուրժուական կեղծ գիտության մի նոր ուղղություն, որն ստացել է «ֆուտուրոլոգիա»[1] անունը: Ըստ էության, ֆուտուրոլոգիան հեղափոխության ուղիով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու անհրաժեշտության վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքի ուղղակի հակադրությունն է: ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտրոնական կոմիտեի հաշվետվության մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Մենք ապրում ենք գաղափարախոսական

*1 «Ֆուտուրոլոգիա» տերմինը ծագել է լատիներեն «Futurum» բառից, որը նշանակում է ապագա: «Ֆուտուրոլոգիա»՝ «ապագաբանություն»: Ֆուտուրոլոգիային նախորդել է ֆուտուրիզմը, որը ծագեց Իտալիայում XX դարի սկզբներին: Ֆուտուրիստներն իրենց հռչակեցին իբրև ապագայի արվեստագետներ:*



անդադրում պատերազմի պայմաններում, որը մեր երկրի դեմ, սոցիալիզմի աշխարհի դեմ մղում է իմպերիալիստական պրոպագանդան՝ օգտագործելով ամենանրբին եղանակներ ու տեխնիկական հզոր միջոցներ» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 120): Բուրժուական ֆուտուրոլոգիան գաղափարական պայքարի այդ տարատեսակներից է:

Ֆուտուրոլոգիայի համար իբրև տեսական զենք են ծառայում բուրժուական աշխարհում լայնորեն տարածված «ինդուստրիալ հասարակության», «կոնվերգենցիայի»[1] և իմպերիալիզմը գովերգող այլ տեսություններ, որոնք ջանում են ապացուցել, թե գիտատեխնիկական առաջադիմությունն աստիճանաբար վերացնում է դասակարգային հակամարտությունները ինչպես ամեն մի երկրում, այնպես էլ միջազգային մասշտաբով: Այդ կոնցեպցիաների հեղինակները մեխանիկորեն նույնացնում են հասարակության տնտեսական սիստեմը և տեխնիկայի մակարդակը, համապարփակ դեր են հատկացնում գիտատեխնիկական առաջընթացին, անտեսում արտադրահարաբերությունների և տնտեսական այն կատեգորիաների բնույթը, որոնց սահմաններում զարգանում են գիտությունն ու տեխնիկան:

Շուրջ մեկ տասնամյակ առաջ բուրժուական տնտեսագետները հռչակեցին «պոստինդուստրիալ հասարակության» կոնցեպցիան, որը սոցիալական կանխատեսումների հիմքում դնում էր միայն տեխնոլոգիան: Վերջին ժամանակներս «պոստինդուստրիալ հասարակության» կոնցեպցիային փոխարինելու է եկել ոչ պակաս հակագիտական մի նոր ուղղություն, որը հայտնի է «տեխնոտրոնային դարաշրջան» անունով: Այս ուղղության ներկայացուցիչները գտնում են, թե հասարակության ապագան որոշվում է ոչ միայն տեխնոլոգիայի, այլև էլեկտրոնիկայի զարգացման մակարդակով:

Սակայն որքան էլ բուրժուական տնտեսագետները «ճշգրտումներ» մտցնեն իրենց մեթոդաբանական դրույթներում, էությունը մնում է նույնը, և նրանք բնավ մտադիր չեն հրաժարվել իրենց դասակարգային շահերից: Այդ պատճառով էլ նրանք հասարակական տեղաշարժերը ներկայացնում են սոսկ որպես տեխնիկայի մեջ կատարվող փոփոխությունների արդյունք, անտեսում են արտադրաուժերի և արտադրահարաբերությունների դիալեկտիկական միասնությունը: Ինչպես «պոստինդուստրիալ հասարակության», այնպես էլ «տեխնոտրոնային դարաշրջանի» կոնցեպցիաների գլխավոր արատն այն է, որ երկուսն էլ տեխնիկային ու տեխնոլոգիային վերագրում են ինքնաբավ դեր, ֆետիշացնում են տեխնիկական առաջադիմությունը և այն կտրում հասարակական-քաղաքական ձևերից:

Միամտություն կլիներ կարծել, թե հասարակության սոցիալ-քաղաքական պայմանների անտեսումը բուրժուական գիտնականների մոլորվածության արդյունք է: Հակակոմունիստ սոցիոլոգ Զբիգնև Բժեզինսկին իր Երկու դարաշրջանների միջև. Ամերիկայի դերը տեխնոտրոնային դարաշրջանում գրքում (1970 թ.) բացահայտորեն հայտարարում է, թե ապագա հասարակության չափանմուշը ԱՄՆ-ն է, որը, իբր թե, արդեն անցել է ինչպես կապիտալիզմի, այնպես էլ սոցիալիզմի փուլերը և մտել «տեխնոտրոնային դարաշրջան»: Բուրժուական գաղափարախոսներն իրենց առջև նպատակ են դրել երկարաձգել կապիտալիզմի գոյությունը և բանվոր դասակարգի ուշադրությունը շեղել իմպերիալիզմի դեմ մղվող պայքարից: Պատահական չէ, որ մեծ թվով բուրժուական գիտնականներ հաճախ նույնիսկ հանդես են գալիս իմպերիալիզմը «քննադատողի» դերում: Նույն Զ. Բժեզինսկին իմպերիալիզմը համարում է անցած էտապ, մահացած մի երևույթ, պատմական մի ուրվական, գտնելով, որ նրա դեմ մղվող պայքարն այլևս հացեատեր չունի:

*1 «Կոնվերգենցիա» (հայերեն՝ զուգամետություն կամ համամետություն) հասկացությունը առաջացել է լատիներեն «Convergo» բառից, որը նշանակում է «մոտենում եմ» կամ «նմանվում եմ»: «Կոնվերգենցիայի» տեսաբանները ցանկանում են ապացուցել, թե արդի դարաշրջանում սոցիալիզմը և կապիտալիզմը փոխներթափանցվում են, որը, իբր, վերջին հաշվով, հասցնելու է մեկ, ինչ-որ երրորդ սիստեմի մեջ սոցիալ-տնտեսական երկու հակադիր սիստեմների միաձուլմանը:*

Իմպերիալիզմի ջատագովները մեծ հույսեր են կապում բուրժուական կեղծ գիտության նոր ուղղության՝ ֆուտուրոլոգիայի հետ: Հայտնի է, որ սոցիալիզմի դիրքերը գնալով ավելի ու ավելի ամրապնդվում են: Դրա հետ միաժամանակ վերջին ժամանակներս ֆուտուրոլոգիան դրսևորում է հակակոմունիստական առաջատար ուղղություններից մեկը լինելու միտումներ:

Արևմտագերմանական ֆուտուրոլոգիայի հայրերից մեկը՝ Օ. Ֆլեխտհեյմը, իր Ֆուտուրոլոգիա մենագրության մեջ (1970 թ.) փորձում է պարզաբանել ապագայի մասին բուրժուական հետազոտությունների դերն ու նշանակությունը: Նա ֆուտուրոլոգիան համարում է «հին գաղափարների» հաղթահարման միջոց: Փորձելով քննադատել ժամանակակից կապիտալիստական հասարակարգի հանրահայտ թերությունները, Ֆլեխտհեյմը, միաժամանակ, ճգնում է քողարկել բուրժուական ֆուտուրոլոգիայի և ապագայի վերաբերյալ մարքսիստական դրույթների հակադրությունները: Բանն այն է, որ բուրժուական ֆուտուրոլոգներից շատերն արդիականության գլխավոր հակասությունը համարում են ոչ թե սոցիալիզմի և կապիտալիզմի, այլ այդ երկու հասարակական սիստեմների ներսում ապագայի և անցյալի ուժերի պայքարը: Իբր մտահոգվելով հասարակության հետագա բախտով, Ֆլեխտհեյմը ձևացնում է, թե ինքը «վեր է կանգնած» ապագայի և անցյալի պայքարի ուժերից և դառնում է «երրորդ ուժ»: Վերջինս, նրա պնդմամբ, ի վիճակի է հաղթահարելու հակադիր երկու ուժերի արատները:

Ամեն մի ռացիոնալ կանխատեսում սովորաբար ստեղծվում է անցյալի և ներկայի փաստական նյութերի վերլուծությամբ: Խորհելով իրենց մոտակա և հեռավոր ապագայի մասին՝ մարդիկ հաշվի են առնում ինչպես պատմական փորձը, այնպես էլ ներկայի ընձեռած հնարավորությունները և ըստ այնմ կատարում համապատասխան դեդուկտիվ մտահանգումներ: Կանխատեսման նպատակը ո՛չ միայն հեռանկարի գուշակումն է, այլև ցանկալի ապագայի կառուցումը: Այս առումով գիտական կանխատեսումը չի կարող դասակարգային, կուսակցական բնույթ չկրել: Մտահանգումների բովանդակությունը միշտ էլ պայմանավորվում է իշխող արտադրահարաբերությունների բնույթով, քանի որ հնարավոր չէ ապրել հասարակության մեջ և միաժամանակ դուրս լինել նրանից: Ավելին, մարդկանց հասարակական բոլոր հարաբերությունները վերջին հաշվով դասակարգային են: Այդ նույնը վերաբերում է նաև կանխատեսման արդյունքների իրականացմանը: Այստեղ կարևորն այն է, թե հասարակական որ դասակարգն է շահագրգռություն ցուցաբերում տվյալ կանխատեսումն իրականացնելու գործում:

Մարքսիզմը պաշտպանում է հասարակության ամենաառաջավոր դասակարգի՝ պրոլետարիատի, աշխատավորների շահերը: Ուստի, ապագայի մարքսիստական կանխատեսումը նպատակ ունի ստեղծելու աշխատավորրության դարավոր երազանքներին համապատասխանող հասարակարգ: Մարքսիստական կանխատեսումը ո՛չ միայն գիտական է, այլև խորապես հումանիստական:

Ի հակադրություն բուրժուական ֆուտուրոլոգիայի, ապագայի կանխատեսման մարքս-լենինյան տեսությունը սերտորեն առնչվում է սոցիալիզմի երկրներում իրականացվող պլանավորման պրակտիկայի հետ: Սակայն պլանավորման և կանխատեսման միջև գոյություն ունեն նկատելի տարբերություններ: Պլանն ունի դիրեկտիվ բնույթ, մինչդեռ կանխատեսման արդյունքների իրականացումը հեռանկարի հարց է: Մյուս կողմից, կանխատեսման արդյունքներն ավելի պակաս ճշգրիտ են, քան պլանը: Ի տարբերություն ընթացիկ պլանի, հեռանկարայինը նշում է միայն առավել կարևոր խնդիրները: Վերջինիս մշակման ժամանակ կիրառվում են խոշորացված ցուցանիշներ և նորմատիվներ: ՍՄԿԿ XXIV համագումարն անհրաժեշտ համարեց ըստ ամենայնի օգտագործել գիտատեխնիկական առաջընթացի հնարավորությունները, բնակչության աճի, բնական ռեսուրսների և այլ բնագավառների վերաբերյալ գիտական կանխատեսումները և, հնգամյա պլաններին զուգընթաց, մշակել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության երկարաժամկետ զարգացման հեռանկարային առավել ռեալ պլան:



Բուրժուական տնտեսագետները չեն կարող ժխտել այն վիթխարի նշանակությունը, որն ունի պլանավորման պրակտիկան: Ընդհակառակը, նրանցից շատերը խոստովանում են, որ կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի մեծագույն առավելություններից մեկը ժողովրդական տնտեսության պլանային վարումն է: Այժմ բազմաթիվ տնտեսագետներ ուղիներ են որոնում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում նույնպես պլանավորման սկզբունքը կիրառելու համար: Եթե առանձին ձեռնարկությունների և մոնոպոլիաների ներսում այդ բանը որոշ չափով հաջողվում է, ապա կապիտալիստական մասնավոր-սեփականատիրական հարաբերությունների պայմաններում արտադրության և բաշխման պլանային կազմակերպումը մնում է որպես սոսկ պատրանք:

Պետք է նշել, որ ֆուտուրոլոգներից ոմանց հաջողվել է կանխատեսման և տնտեսության պլանավորման ասպարեզում առաջարկել մեթոդական մի շարք ուշագրավ նորույթներ: Այսպես, ամերիկյան ֆուտուրոլոգ Ս. Էնզերն առաջարկում է ապագայի վերաբերյալ հետազոտություններում կիրառել տրամախաչվող զուգորդումների մեթոդը: Վերջինիս ճիշտ կիրառմամբ հնարավոր կլինի սիստեմատիկ ձևով հաշվի առնել բազմաթիվ երևույթների ու իրադարձությունների միջև գոյություն ունեցող փոխադարձ պատճառական կապերը և կատարել արդյունավետ հետազոտություններ:

Սակայն պատմական փորձը վկայում է, որ տնտեսագիտական հետազոտություններում ճիշտ մեթոդի կիրառումը դեռևս բավական չէ: Կարևորն այն է, թե այդ մեթոդը որքանով ճիշտ է գործադրվում և ինչպիսի հնարավորություններ կան դրա իրականացման համար: Հայտնի է, որ տնտեսագիտական հետազոտություններում աբստրահման մեթոդը Կարլ Մարքսից առաջ օգտագործել են բուրժուական քաղաքատնտեսության դասական դպրոցի ներկայացուցիչները: Բայց որովհետև աբստրահման նրանց մեթոդը տառապում էր մետաֆիզիկական սահմանափակությամբ, ուստի և հանգեցրեց կապիտալիզմի մշտնջենական լինելու հակագիտական եզրակացության: Նույնը տեղի է ունենում մեր օրերում: Ճիշտ մեթոդները, եթե նույնիսկ դրանց կիրառման փորձ է արվում, բախվում են բուրժուական քաղաքատնտեսության նեղ շրջանակներին, որոնց հաղթահարումը վեր է ֆուտուրոլոգների ուժերից:

Մեր ժամանակներում գիտատեխնիկական հեղափոխությունն ընդգրկել է համարյա ամբողջ աշխարհը և մարդկության առջև բացել բնության վերափոխման, նյութական վիթխարի հարստությունների ստեղծման, մարդու ստեղծագործական ունակությունների բազմակողմանի զարգացման անսպառ հնարավորություններ: Գիտատեխնիկական հեղափոխության շնորհիվ հայտնաբերվում և օգտագործվում են էներգիայի նոր տեսակներ ու աղբյուրներ, ավտոմատացվում են արտադրապրոցեսները, էլեկտրոնային-հաշվիչ տեխնիկան լայնորեն կիրառվում է արտադրության կառավարման և գիտության ասպարեզում, սինթեզվում են նոր նյութեր, ներդրվում տեխնոլոգիայի ֆիզիկա-քիմիական մեթոդներ, գիտությունն ավելի ու ավելի համարձակորեն թափանցում է միկրո և մակրո աշխարհները:

Բուրժուական ֆուտուրոլոգները բոլորովին անտեսում են այն փաստը, որ սոցիալիզմի և կապիտալիզմի պայմաններում գիտատեխնիկական հեղափոխությունն իրականացվում է միանգամայն տարբեր ձևերով: Նրանք ճըգնում են ապացուցել, թե սոցիալ-տնտեսական տարբեր պայմաններում գիտատեխնիկական հեղափոխության արդյունքների միջև ոչ մի տարբերություն չկա: Մինչդեռ իրականում գիտատեխնիկական հեղափոխությունն իր էությամբ ու արդյունքներով հասարակական տարբեր սիստեմներում բոլորովին հակադիր նպատակ է հետապնդում: Սոցիալիզմի պայմաններում գիտատեխնիկական հեղափոխությունը ծառայում է աշխատավորների հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարմանը: Գիտությունն ու տեխնիկան սոցիալիզմի ժամանակ թեթևացնում են մարդու աշխատանքը, նպաստում

նրա գործունեության բովանդակության հարստացմանը, ամբողջ ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացմանը: Այդ պատճառով էլ ՍՄԿԿ XXIV համագումարը խնդիր դրեց գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն օրգանապես միացնել սոցիալիստական սիստեմի առավելություններին և լայնորեն զարգացնել արտադրության ու գիտության կապի սոցիալիզմին բնորոշ ձևերը:

Կապիտալիզմի ժամանակ գիտատեխնիկական հեղափոխության արդյունքները պատկանում են ոչ թե աշխատավորությանը, այլ բուրժուազիային: Գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները մոնոպոլիաների համար լրացուցիչ շահույթների աղբյուր են: Միևնույն ժամանակ կապիտալիզմի պայմաններում գիտատեխնիկական հեղափոխությունը նպաստում է աշխատանքի լարվածության բարձրացմանը, գործազուրկների թվի մեծացմանը և ընդհանրապես դասակարգային հակասությունների խորացմանն ու սրմանը:

Այդ համեմատությունները ցույց են տալիս, որ գիտատեխնիկական հեղափոխության դերի ֆետիշացումը նույնքան հակագիտական է, որքան և անտեսումը:

Մոնոպոլիստական կապիտալի ջատագովները գիտատեխնիկական հեղափոխության ընթացքն ու սոցիալական հետևանքները մեկնաբանում են՝ ելնելով կեղեքող դասակարգերի շահերից: Նրանք գիտության և տեխնիկայի զարգացման պրոցեսը անջատում են հասարակական հարաբերություններից և այդպիսով մթագնում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումը: Ֆուտուրոլոգներից ոմանք այն հոռետեսական կարծիքն են հայտնում, թե տեխնիկայի միջոցներով բնության ենթարկումը մարդուն, նրա փոխարեն մեքենաների կամ ռոբոտների օգտագործումը ողջ աշխարհում ստեղծում են այնպիսի անլուծելի պրոբլեմներ, որոնց բախվելով մարդն ստիպված կլինի ամբողջապես փոխել նաև իր բնությունը: Ամերիկյան ֆուտուրոլոգ Գերման Կանը, օրինակ, մարդկության համար կանխագուշակում է մռայլ ու մղձավանջային հեռանկար: Նրա ասելով, արդեն 2001 թվականին ժողովուրդը կվերածվի անհոգ, շատ թե քիչ կուշտ հոտի, ամենուրեք կտիրապետի էլեկտրոնային դիկտատուրան, որին կուղեկցի մարդու անհատականության ամայացման պրոցեսը:

Գիտատեխնիկական հեղափոխության շնորհիվ, իհարկե, հասարակության կյանքում տեղի են ունենում լուրջ փոփոխություններ: Բայց դա չի ենթադրում, թե մարդն ապագայում կհրաժարվի իր դարավոր ավանդույթներից կամ կկորցնի իր անհատականությունը:

Ֆուտուրոլոգները տվյալ հասարակության ներսում տիրապետող արտադրահարաբերությունները պայմանավորում են տեխնիկայի բնույթով: Մինչդեռ տեխնիկայի մակարդակը և արտադրահարաբերությունները տարբեր հասկացություններ են: Ոչ ոք չի ժխտում, որ մեր օրերում տեխնիկայի զարգացման գրեթե նույնանման մակարդակ ունեն ինչպես սոցիալիստական, այնպես էլ տնտեսապես առավել զարգացած կապիտալիստական երկրները: Բայց դա չի խանգարում, որպեսզի սոցիալիզմի և կապիտալիզմի պայմաններում ձևավորվեն ու զարգանան մարդկային անհատականության տրամագծորեն տարբեր որակներ: Սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրակտիկան ցույց է տալիս, որ գնալով ավելի է աճում մարդու ստեղծագործական ակտիվությունը:

Աշխատավորական լայն զանգվածների ուշադրությունը իմպերիալիզմի ներքին հակասություններից շեղելու նպատակով, ֆուտուրոլոգները հայտարարում են, թե տնտեսության և բնակչության աճը, ի վերջո, մարդկությանը կկանգնեցնի կործանման եզրին: Այս տեսակետից բնորոշ է 1972 թվականին ամերիկյան և նորվեգական մի խումբ բուրժուական տնտեսագետների հրատարակած Աճի սահմանները գիրքը: Աշխատության հեղինակներ Դենիս և Դոնելլա Մեդոուզները, Յու. Ռանդերսը և Վ. Բերենսը, ելնելով բնակչության աճի և բնական ռեսուրսների սպառման լոկ քանակական, միջին վիճակագրական տվյալներից, հորինել են, այսպես կոչված, մի «աշխարհի մոդել»:



Որպես այդ «մոդելի» ելակետ, նրանք ընդունել են գերբնակչության հակագիտական օրենքը, ազգաբնակչության պրոբլեմը կտրելով սոցիալ-պատմական կոնկրետ իրականությունից: Նրանք «գուշակում» են, թե արդյունաբերական արտադրաֆոնդերի ծավալի աճն արդեն մինչև 2100 թվականն ուժասպառ կանի աշխարհի հումքային բազան, որի հետևանքով խիստ կկրճատվի արտադրությունը: Վերահաս աղետը կանխելու նպատակով նրանք պահանջում են դադարեցնել արտադրաուժերի զարգացումը և 1975 թվականից անցնել «զրո-աճի», այսինքն՝ ընդլայնված վերարտադրությունից վերադառնալ պարզ վերարտադրության: Աճի սահմանների հեղինակների այս հայացքները քննադատվում են նույնիսկ բուրժուական որոշ շրջաններում: Արևմտագերմանական տնտեսագիտության պրոֆեսոր Ֆ. Բաադեն, օրինակ Աճի սահմանները գիրքը դիպուկ կերպով բնութագրեց որպես «հոռետես-գիտնականների կոլեկտիվ ստեղծագործության արդյունք» (РЖ, Общественные науки за рубежом. Серия IV, Науковедение, 1973, № 3, стр. 39):

Բուրժուական ֆուտուրոլոգները գիտակցաբար լռության են մատնում երկու հակադիր սոցիալ-տնտեսական սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի, արմատական տարբերությունները: Նրանք բնակչության, արդյունաբերական և պարենային ապրանքների արտադրության աճի հարցերը մեկուսացնում են սոցիալական պրոբլեմներից և անում այն հետևությունը, թե սոցիալիստական երկրներում ապագան նույնքան դժգույն է, որքան կապիտալիստական երկրներում: Նման «ընդհանրացումը» գիտական ոչ մի հիմք չունի: Բնական ռեսուրսների նկատմամբ գիշատիչ վերաբերմունքը հատուկ է միայն շահույթի մրցավազքի ասպետներին: Դա կապիտալիզմի ծնունդ է, որը շահույթի համար պատրաստ է զոհել թե՛ բնությունը և թե՛ մարդկանց: Իզուր չէին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը դեռևս անցյալ դարի 40-ական թվականներին ապացուցում, որ տիրապետող դասակարգ դառնալու հենց սկզբից բուրժուազիան մարդկանց միջև ոչ մի այլ կապ չթողեց, բացի մերկ շահից...

Բուրժուական գաղափարախոսությունն ամեն կերպ փորձում է հիմնավորել աշխատավորների գործազրկությունն ու աղքատությունը: Ներկայումս այդպիսի «հիմնավորումներով» են զբաղվում ինչպես ֆուտուրոլոգները, այնպես և այլ ուղղությունների բուրժուական գաղափարախոսները: Ամերիկացի լրագրող Բարչն իր Հողը քանի մարդ կարող է կերակրել հոդվածում պնդում է, թե ներկայիս բնակչության լոկ $^{1}/_{3}$-ը կարող է ապահովվել գոյության միջոցներով: Նրա կարծիքով, երկրագնդի բնակչության հետագա աճը ստեղծում է նոր՝ երրորդ համաշխարհային պատերազմի սպառնալիք: Ժամանակակից մալթուսականներից մեկը՝ ամերիկացի Վ. Ֆոխտը, հայտարարում է, թե պարենային ապահովվածության տեսակետից այժմ հասարակությունը գտնվում է այնպիսի վիճակում, որպիսի կացության մեջ կգտնվեր իր ոտքերից երկու համարով փոքր կոշիկ հագած մարդը: Դրությունը բարելավելու նպատակով նա առաջարկում է... ԱՄՆ-ի բնակչությունը կրճատել $^{1}/_{3}$-ով, Եվրոպայինը՝ երկու կամ նույնիսկ երեք անգամ: Նեոմալթուսականները հատկապես ավելորդ են համարում սև և դեղին ռասաների ժողովուրդներին, որոնց անվանում են ոչ լիարժեք մարդիկ:

Հաջորդ հարյուրամյակը բուրժուական ֆուտուրոլոգները առավել մռայլ գույներով են ներկայացնում: Նրանք հայտարարում են, թե արդեն XXI դարի սկզբներին, գյուղատնտեսական հողատարածությունների անբավարարության հետևանքով, պարենային ճգնաժամն անխուսափելի կլինի: Մինչև վերջերս բուրժուական տնտեսագիտությունն այդ բանում հենվում էր «հողի նվազող պտղաբերության» հակագիտական տեսության վրա[1]: Կյանքը ինքն ապացուցեց այդ «օրենքի» սնանկությունը: Այժմ էլ բուրժուական տնտեսագետները հորինել են «աճող ծախքերի օրենքը», որով փորձում են ապացուցել, թե

1 «Հողի նվազող պտղաբերության» հետադիմական տեսության հեղինակները պնդում էին, թե իբր հողի մեջ կատարվող յուրաքանչյուր լրացուցիչ ներդրում նախորդի համեմատությամբ ավելի քիչ արդյունք է տալիս:

սննդամթերքի արտադրության մակարդակի բարձրացման համար կատարվող լրացուցիչ ներդրումները գնալով գերազանցում են այդ մթերքների փաստական աճի արժեքին: Օգտագործելով այս նոր «օրենքը», բուրժուական ֆուտուրոլոգները պնդում են, թե մոտ ապագայում այլևս անհնարին կլինի աճող բնակչության կերակրումը: Դա մի նոր փորձ է կապիտալի աշխարհում գոյություն ունեցող գործազրկությունն ու աղքատությունն արդարացնելու և կապիտալիզմին հատուկ այդ երևույթների իսկական պատճառները քողարկելու ճանապարհին: Չէ՛ որ այժմ ոչ սոցիալիստական երկրներում մոտավորապես 100 միլիոն մարդ անգործ է:

Հարկավոր է շեշտել, որ նյութական ռեսուրսերն անփոփոխ մեծություններ չեն: Գիտատեխնիկական առաջընթացի համեմատ ապահովվում է նաև այդ ռեսուրսների աճը: Հնում մարդիկ սնվել են լոկ վայրի պտուղներով, արմատիքով, որսած կենդանիների ու թռչունների մսով: Ներկայումս, բնության պարգևների հետ միասին, մարդիկ օգտագործում են նաև արհեստական եղանակով ստացված մթերքներ: Միևնույն ժամանակ մեծ չափով ընդլայնվել են աշխատանքի նախկին առարկաների կիրառելիության սահմանները: Ընդամենը մեկ դար առաջ նավթը վերամշակվում էր միայն կերոսին ստանալու նպատակով: Այնուհետև մարդիկ սկսեցին նավթի մնացուկից՝ մազութից, քսայուղեր ստանալ: Մեր դարի սկզբներին ամբողջ աշխարհում լայն կիրառում ստացավ բենզինը, որը ևս նախկինում համարվում էր նավթի մնացուկ: Այժմ նավթամշակման արդյունաբերությունը տալիս է այնպիսի արժեքավոր նյութեր, ինչպիսիք են սինթետիկ կաուչուկը, կապրոնը, նեյլոնը, պլաստիկ զանգվածները, սպիրտը, օծանելիքները, դեղամիջոցները և այլն: Բնական հումքի կողքին ստեղծվում են արհեստական հումքի տեսակներ: Քիմիական արդյունաբերությունը, օրինակ, ստանում է այնպիսի թելեր, որոնց յուրաքանչյուր տոննայի արտադրության համար տասնապատիկ պակաս աշխատանք է պահանջվում, քան բրդյա թելերի և շուրջ 40 անգամ պակաս, քան մետաքսաթելի արտադրության վրա: Քիմիայի օգնությամբ պատրաստված նյութերը, բնականի համեմատությամբ, ավելի թեթև են, հաճախ նաև՝ ավելի դիմացկուն: Մեկ տոննա պլաստիկ զանգվածը, օրինակ, փոխարինում է 3—4 տոննա գունավոր մետաղների: Գիտատեխնիկական առաջընթացի շնորհիվ հնարավորություններ են ստեղծվել տարբեր նյութերի համադրման, հողի ավելի խոր շերտերից և օվկիանոսի հատակից նորանոր ռեսուրսներ հայթայթելու համար:

Ապագան կանխագուշակելիս, սակայն, բուրժուական ֆուտուրոլոգները ելնում են նյութական ռեսուրսների ստատիկ հավասարակշռության վիճակից և պնդում, թե XXI դարում ևս հումքի պաշարները կսպառվեն նույնպիսի համամասնություններով, ինչպես մինչև այժմ: Ընդ որում, ֆուտուրոլոգներն իրենց կանխատեսումներում լայնորեն օգտագործում են էլեկտրոնային-հաշվիչ տեխնիկան, իհարկե, չարաշահելով մաթեմատիկական մոդելավորման մեթոդները և գետեղելով այնպիսի անհիմն գործակիցներ, որոնք չեն ենթարկվում ճիշտ հաշվարկների:

Վերջին տարիներին ամբողջ աշխարհում մեծ թվով գիտնականներ զբաղվում են բնության պահպանության արդյունավետ միջոցառումների մշակման պրոբլեմներով: Դա համամարդկային խնդիր է, որը, սակայն, չի ենթադրում, թե միջավայրի պահպանման համար կապիտալիզմի և սոցիալիզմի պայմաններում պետք է առաջադրվի նույն «դեղատոմսը»: Բանն այն է, որ բնության նկատմամբ մարդու վերաբերմունքը պայմանավորված է տիրապետող արտադրահարաբերություններով: Անտեսելով հասարակական-տնտեսական տարբեր արտադրաեղանակների զարգացման առանձնահատուկ օրենքները, բուրժուական գիտնականները ժխտում են բնության նկատմամբ մարդու վերաբերմունքի սոցիալական և դասակարգային բնույթը: Իրենց եզրակացություններում ֆուտուրոլոգները հենվում են այսպիսի փաստերի վրա. Հարավային Կալիֆոռնիայում 1970 թվականի սկզբին օդի թունավորման հետևանքով չորացան շուրջ մեկ միլիոն եղևնիներ: Նյու-Յորքի վրա մշտապես կախված են թունավոր ամպեր: Այդ քաղաքը տարեկան բաց է թողնում մոտ 3,3 մլն տոննա մուր, գազեր ու քիմիկատներ, որի հետևանքով բնակիչներին է հասնում արեգակնային լույսի լոկ 75 տոկոսը: Ֆուտուրոլոգների հաշվարկներով 2000 թվականին երկրագնդի բնակչության խտությունը մեկ քառակուսի կիլոմետրի հաշվով կկազմի 45 մարդ՝ 1900 թվականի 11-ի դիմաց: Բնակչության այդպիսի աճի պայմաններում, հայտարարում են նրանք, ոչ միայն անհնարին կդառնան սպասարկման բազմաթիվ հարցեր, այլև քաղաքների փողոցները կվերածվեն գազախցիկների, մթնոլորտում կավելանա ածխաթթու գազի պարունակությունը, մեծ չափերով կպակասի հողագնդի բուսածածկը:

Վերջին ժամանակներս բուրժուական մի խումբ տնտեսագետներ մշակել են տեսական այնպիսի կոնցեպցիա, ըստ որի շրջապատող միջավայրի աղտոտումը տեխնիկա-տնտեսական առաջադիմության հետևանք է և բոլորովին կապ չունի հասարակական հարաբերությունների հետ: Ֆուտուրոլոգները շրջապատի աղտոտումը փորձում են բացատրել շրջանառության ոլորտում տեղի ունեցող պրոցեսներով և, ամենից առաջ, մարդկանց սպառողական պահանջարկի մեծացումով: Այդպիսի դատողությունները երբեմն անհեթեթությունների են հասցնում: Արևմտյան Գերմանիայի քիմիական կոնցեռնների ներկայացուցիչները, օրինակ, հայտարարում են, թե Հռենոս գետի կենսաբանական հավասարակշռությունը խախտում են ոչ թե լվացքի փոշիներ արտադրող ֆիրմաները, այլ... լվացք անող տնային տնտեսուհիները: Եվ դա այն դեպքում, երբ լվացքի միջոցներ արտադրող խոշորագույն «Հենկել» ֆիրման միայն 1970 թվականին 100 մլն մարկ ծախսեց ռեկլամի վրա, իսկ շրջապատող միջավայրի պաշտպանության նպատակով՝ ընդամենը 15 մլն մարկ («Analusen und Prognosen», 1971. № 16):

Մոնոպոլիաների գաղափարախոսները ցանկանում են միջավայրի վերականգնման ծախսերի ամբողջ ծանրությունը դնել աշխատավորների ուսերին: Մյուս կողմից, բուրժուական գիտության հետադիմական ուժերը ձգտում են էկոլոգիայի պրոբլեմներն օգտագործել մարդկանց ուշադրությունը պատերազմի և աղքատության հարցերից շեղելու նպատակով:

Մարդկային հասարակության զարգացման մայրուղին նախանշել է մարքսիզմ-լենինիզմը: Դա սոցիալիստական հեղափոխությունների, սոցիալիզմի և կոմունիզմի ուղին է: Շահագործող դասակարգերը հակակոմունիստական պրոպագանդայի իրենց զինանոցը շարունակ հարստացնում են նոր միջոցներով, որոնք, սակայն, միշտ նույն անփոփոխ նպատակին են ծառայում՝ սքողել կապիտալիզմի անհաշտելի հակասությունները, վարկաբեկել սոցիալիզմն ու կոմունիզմը, նենգափոխել մարքս-լենինյան հեղափոխական ուսմունքը: Իմպերիալիզմի հակակոմունիստական զինանոցում տեղ գտած նորագույն միջոցներից մեկն էլ ֆուտուրոլոգիան է, որի ներկայացուցիչները կատարում են մոնոպոլիստական բուրժուազիայի սոցիալական պատվերը:

# ՆԵՐԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԱՄԱՐ

Հ. Հ. ՏՈՆՈՅԱՆ
ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար

ՀԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը (1973 թ.) խորությամբ վերլուծեց ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների կատարման, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման ասպարեզում հանրապետության սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած գործունեությունը, միջոցառումներ մշակեց՝ նրանց դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու համար։

ՀԿԿ Ախուրյանի շրջկոմը ևս զգալի գործ է արել սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու, կազմակերպական ու քաղաքական գործունեությունն ակտիվացնելու, նրանց կողմից տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման ձևերն ու մեթոդները կատարելագործելու ասպարեզում։ Այդ ամենի շնորհիվ կուսկազմակերպություններն ավելի մոտիկից են խորամուխ լինում հանրային արտադրության բոլոր տեղամասերի գործերում, հաջողությամբ գլխավորում աշխատավորության պայքարը՝ շրջանի առջև դրված խնդիրները լուծելու համար։ Նրանց ծավալած կազմակերպական ու քաղաքական գործունեության հաջողությանը մեծապես նպաստում են կուսժողովները և որոշումների կատարման ստուգման ճիշտ կազմակերպումը։

Ժողովը կուսկազմակերպության բարձրագույն օրգանն է, նրա կոլեկտիվ միտքը, կոլեկտիվ ղեկավարության իրականացման միջոցը, կոմունիստների դաստիարակության դպրոցը և քննադատության ու ինքնաքննադատության ամբիոնը։ Այստեղ են լուծվում ո՛չ միայն կուսկազմակերպությունների, այլև աշխատավորական կոլեկտիվների կյանքին ու գործունեությանն առնչվող բազմաթիվ պրոբլեմներ։

Ղեկավարվելով «Յարոսլավլի քաղաքային կուսակցական կազմակերպությունում կուսակցական ժողովների անցկացման պրակտիկայի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1969 թ. որոշումով՝ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները նկատելիորեն բարելավել են ժողովների նախապատրաստման ու անցկացման գործը, բարձրացրել դրանց դերը։ Նրանք ժողովներում քննարկում և լուծում են տնտեսական և քաղաքական դաստիարակության բազմաբնույթ հարցեր, որոշում իրենց կոնկրետ խնդիրները՝ տնտեսական գործունեությունը բարելավելու, աշխատանքի գիտական կազմակերպումն արմատավորելու, արտադրության զարգացման հնարավորություններն ու ռեզերվները գործողության մեջ դնելու, աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործը բարելավելու ասպարեզներում։

Կուսշրջկոմը հետևողականորեն զբաղվում է ներկուսակցական կյանքն աշխուժացնելու, ժողովների դերը բարձրացնելու հարցերով։ Բազմաթիվ միջոցա-



ռումներից անհրաժեշտ եմ համարում նշել մեկը. Ժողովներին հաճախ մասնակցում են կուսշրջկոմի պատասխանատու աշխատողները և բյուրոյի անդամները։ Սակայն նրանք հանդես չեն գալիս խնամակալական դերով, այլ նպաստում են կոմունիստների նախաձեռնության և ակտիվության աճին, կազմակերպությունների մարտունակության բարձրացմանը։ Այս պրակտիկան ամրապնդում է շրջկոմի կապը տեղերի հետ, ապահովում փոխադարձ ինֆորմացիա։

Շրջկոմի և կուսկազմակերպությունների բյուրոները ժողովներում պարբերաբար ինֆորմացիա են տալիս իրենց աշխատանքի մասին, լսում կուսակցության անդամների և անդամության թեկնածուների հաղորդումները ՍՄԿԿ ծրագրի և կանոնադրության պահանջները կատարելու վերաբերյալ։ Այս ամենը բարձրացնում է կոմունիստների ակտիվությունն ու պատասխանատվությունը, դրական ազդեցություն ունենում սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության վրա։

Շրջանի ամենամեծ տնտեսության՝ Ազատանի կոլտնտեսության, կուսկազմակերպությունում ժողովները հրավիրվում են ՍՄԿԿ կանոնադրությամբ նախատեսված ժամկետներում, անցկացվում խնամքով ու բազմակողմանիորեն նախապատրաստված, կոմունիստների ակտիվ մասնակցությամբ։ Բնորոշն այն է, որ այստեղ ճիշտ է ընտրվում ժողովի օրակարգը, քննարկվում են հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, կազմակերպչական և գաղափարա-քաղաքական կարևոր հարցեր։ Դրանք նախապատրաստելու համար կոմունիստներին տրվում են կոնկրետ հանձնարարություններ։ Լուրջ ուշադրություն է նվիրվում զեկուցագրի կազմմանը։ Զեկուցողը և կոմունիստներն ամենայն լրջությամբ են մոտենում փաստերի ընտրությանն ու վերլուծությանը, դրանցից անում ճիշտ հետևություններ։

Կազմակերպության ժողովներում կուսակցական սկզբունքային դիրքերից քննադատվում են տնտեսության գործունեության թերությունները, առանձին կադրերի կողմից գործի նկատմամբ ցուցաբերվող անբարեխիղճ վերաբերմունքը։ Ընդ որում, քննադատությունը սովորաբար լինում է հասցեագրված, հաշվի են առնվում կոմունիստների դիտողություններն ու առաջարկները, ընդունվում նրանց կոլեկտիվ միտքն արտահայտող գործնական որոշումներ։ Որպես կանոն, այստեղ յուրաքանչյուր ժողով սկսվում է կուսակցական վերադաս մարմինների և նախորդ ժողովում ընդունած սեփական որոշումների կատարման ընթացքի մասին հաղորդումներով, հաշիվ են պահանջվում նրանցից, ովքեր թերանում են հանձնարարությունները կատարելու և որոշումները կենսագործելու մեջ։ Դա մեծապես նպաստում է կուսանդամների ակտիվության աճին և պատասխանատվության բարձրացմանը։

Ծանոթանալով Ազատան գյուղի Ջերժինսկու անվան Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության գործունեությանը, դժվար չէ նկատել, թե որքան ժամանակին ու տեղին են քննարկվել արտադրությանը վերաբերող հարցերը, որոնք էապես նպաստել են էկոնոմիկայի առաջընթացին։ Կուսկազմակերպության ժողովներում և բյուրոյի նիստերում մեկ անգամ չէ, որ խոսվել է կոլտնտեսության անասնապահության հետ մնալու մասին։ Եվ, իրոք, եթե կոլտնտեսությունը փայլում է դաշտավարության բնագավառում ձեռք բերած բարձր արդյունքներով, ապա նույնը չի կարելի ասել անասնապահության մասին։ Կոլտնտեսությունը չկատարեց 1973 թ. մթերքների արտադրության առաջադրանքները, անասունների զգալի կորուստ ունեցավ, արտադրված մթերքների որակը չէր համապատասխանում պետական ստանդարտին։ Մանրազնին ուսումնասիրությունից հետո անասնապահական մթերքների արտադրության հնգամյա պլանի կատարման հարցը քննարկվեց կուսկազմակերպության բյուրոյի նիստում և կուսժողովում։ Ընդունվեցին գործին օգնող որոշումներ, մշակվեցին միջոցառումներ՝ անասունների ցեղի բարելավման, անասնապահության աշխատատար գործողությունների մեքենայացման, կթվոր-անասնապահների տնտեսագիտական ուսուցման կազմակերպման և նյութական շահագրգռվածության բարձրացման, սոցիալիստական մրր-

ցության ծավալման, կերի կայուն բազայի ստեղծման համար: Կուսբյուրոն այնուհետև ձեռնամուխ եղավ դրանց կենսագործմանը: Այժմ էապես բարելավվել է անասնապահության գործերի վիճակը: Կոլտնտեսությունը մսի վաճառքի ընթացիկ տարվա կիսամյա պլանը կատարեց 203, կաթինը՝ 120, ձվինը՝ 130 տոկոսով: Այժմ էլ կոլտնտեսային սկզբնական կուսկազմակերպությունը չի բավարարվում ձեռք բերածով, պարբերաբար ուսումնասիրում, քննության է առնում անասնապահության առանձին ճյուղերի գործերի վիճակը, օգնում դրանց բարելավմանը:

Եվ այսպես, Ազատանի կոլտնտեսության կուսկազմակերպությունը կուսակցական-կազմակերպական աշխատանքը հաջողությամբ է զուգակցում տնտեսական խնդիրների իրականացմանը: Դրա վկայությունը տնտեսության առաջընթացը վկայող բարձր արդյունքներն են:

Կուսժողովները բարձր մակարդակով են նախապատրաստում և անցկացնում նաև Մարմաշենի, Հովունիի, Հայկավանի, Կամոյի կոլտնտեսային, Ծաղկասարի, Շիրակի, Ջաջուռի սովխոզային, «Հայջրշին» № 2 տրեստի, № 6 ճանշինվարչության, Ազատանի դպրոցական, բուժմիավորման, Առափիի տերիտորիալ և այլ կուսկազմակերպություններ: Նրանք գլխավոր ուշադրությունը բևեռում են դեռևս չլուծված հարցերի քննարկմանը: Օրինակ, Հովունիի կոլտնտեսությունը գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի ասպարեզում հասել էր բարձր ցուցանիշների, սակայն այստեղ դեռևս չէին լուծված գյուղի բարեկարգման և բնակչության կենցաղսպասարկման հարցերը: Դրանք վերջերս դարձան կուսկազմակերպության ժողովի քննարկման առարկա: Մշակվեցին միջոցառումներ՝ բնակչության կենցաղսպասարկումը բարելավելու մասին ՀԿԿ Կենտկոմի որոշումը կենսագործելու համար, ընդունվեց որոշում՝ գյուղը բարեկարգելու վերաբերյալ: Քննարկմանն անմիջապես հետևեց գործը, որին հասարակական կարգով մասնակցեցին գյուղի բոլոր բնակիչները: Ժողովի որոշումը մինչև վերջ կենսագործելու շնորհիվ, երբեմնի անհրապույր բնակավայրն այժմ բարեկարգ է, ծառապատ և հրապուրիչ: Արմատապես բարելավվել է նաև կենցաղսպասարկումը:

«Հայջրշին» № 2 տրեստի կուսկազմակերպությունում 100-ից ավելի կոմունիստներ կան: Նրանք աշխատում են տարբեր տեղամասերում, բայց երբ իմանում են ժողովի օրվա և օրակարգի մասին, ներկայանում են ճիշտ ժամին ու նախապատրաստված: Այստեղ ժողովներն անցնում են բարձր մակարդակով, սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության, կարծիքների լայն ու անկեղծ փոխանակության մթնոլորտում: Հարցերի քննարկմանը մասնակցում են նաև մեծ թվով անկուսակցական բանվորներ, մասնագետներ, ծառայողներ, որոնք իրենց ելույթներով ու սկզբունքային հարցադրումներով օգնում են կոմունիստներին՝ ընդունելու ճիշտ ու հիմնավորված որոշումներ:

Կուսկազմակերպությունը և տրեստի կոլեկտիվը հաջողությամբ են կենսագործում մելիորացիոն միջոցառումների անցկացման և ջրովի հողատարածությունների ավելացման մասին կուսակցության ու կառավարության որոշումները, ջրաշինարարական շնորհակալ աշխատանք կատարում հանրապետության 18 շրջաններում:

Կուսկազմակերպության ուշադրությունից չեն վրիպում կադրերի քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման, աշխատողների կոմունիստական դաստիարակության հարցերը: Այսպես, ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ առանձին ինժեներա-տեխնիկական աշխատողներ գործում են հին մեթոդներով, դժվարություններ կրում արտադրության կազմակերպման, վարձատրության, նյութերի ու միջոցների տնտեսման նոր եղանակների ներդրման բնագավառում: Ստեղծված իրավիճակը անհանգստացրեց կուսկազմակերպությանը և ղեկավարությանը: 1973 թ. դեկտեմբերի 20-ին կուսժողովում քննարկվեց «Տրեստի բանվոր-ծառայողների և ինժեներա-տեխնիկական աշխատողների տնտեսագիտական կրթության վիճակի և այն բարելավելու մասին» հարցը: ՍՄԿԿ Կենտկոմի «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» որոշման պահանջներից ելնելով, կուսկազմակեր-



պությունը մշակեց գործնական միջոցառումներ: Շուտով տրեստում կազմակերպվեց զլոբինյան տնտհաշվարկային մեթոդով աշխատող մեկ աշխղեկություն, նորոգման-մեխանիկական գործարանում, ավտոբազայում և № 2 շինմոնտաժային վարչությունում ստեղծվեցին տնտեսագիտական դպրոցներ, ավելացվեց տնտեսագիտական թեմաներով հանդես եկող քաղինֆորմատորների թիվը: Այժմ տրեստում տնտեսագիտական գիտելիքներ են ձեռք բերում շուրջ 200 բանվոր-ծառայողներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ:

Կարևորն այն է, որ կուսկազմակերպության քարտուղարը, բյուրոյի հանձնարարությամբ, յուրաքանչյուր հերթական ժողովին կոմունիստներին ինֆորմացիա է տալիս ընդունված որոշումների կատարման ընթացքի մասին: Կուսկազմակերպության և տրեստի ղեկավարության հետևողականության շնորհիվ կոլեկտիվը հաջողությամբ կատարեց 1973 թ. և ընթացիկ տարվա առաջին կիսամյակի շինմոնտաժային աշխատանքների պլանները: Անցած վեց ամիսներին զլոբինյան մեթոդով գործող աշխղեկությունը կատարեց 200 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք, որը, մյուս աշխղեկությունների համեմատությամբ, ավելի է 15—20 տոկոսով:

Լավ օրինակները շատ են: Բայց, այնուամենայնիվ, կուսժողովների անցկացման և ընդունված որոշումների վերահսկողության ու կատարման ստուգման մեր պրակտիկայում դեռևս կան թերություններ: Առանձին կուսկազմակերպություններ անբավարար են նախապատրաստում ու անցկացնում ժողովները, անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծում քննադատության ու ինքնաքննադատության ծավալման, թերությունների, գործի հանդեպ անբարեխիղճ վերաբերմունքի փաստերի բացահայտման համար: Երբեմն դրանց մասին խոսվում է ընդհանուր ձևով, անհասցե, աշխատանքի բացերն ու ղեկավարների սխալները ներկայացվում են որպես կուսկազմակերպության և ամբողջ կոլեկտիվի թերացում: Միշտ չէ, որ պատշաճ պահանջկոտություն է ցուցաբերվում կոմունիստների նկատմամբ՝ կուսակցական ու աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու և բարոյական նորմերը խստիվ կիրառելու համար: Ահա մի օրինակ: Ախուրիկի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունն իր ժողովներում հաճախակի էր քննարկում տարբեր օղակներում աշխատանքի կազմակերպմանը, կոլտնտեսականների կոմունիստական դաստիարակությանը, կարգապահության ամրապնդմանն ու արտադրության բարձրացմանը վերաբերող հարցեր, որոնք, սակայն, անհրաժեշտ խորությամբ և բազմակողմանի չէին ուսումնասիրվում ու նախապատրաստվում, կոնկրետ ուղիներ չէին նշվում՝ եղած հնարավորություններն ու ռեզերվներն արդյունավետ օգտագործելու համար: Ընդունած որոշումները զուրկ էին կոնկրետությունից ու գործնականությունից, կուսբյուրոն չէր ապահովում վերադաս կազմակերպությունների որոշումների կատարումը:

Կուսկազմակերպությունում և կոլտնտեսությունում ստեղծված վիճակը չէր կարող չանհանգստացնել շրջկոմին: Մենք անդրադարձանք այդ հարցին և տնտեսությունն ամրապնդեցինք լավագույն կադրերով, ուժեղացրինք կուսկազմակերպությանը ցույց տրվող օգնությունն ու ղեկավարությունը: Եվ երբ վերջերս շրջկոմի բյուրոյում քննարկվեց կուսկազմակերպության հաշվետվությունը՝ սեփական և վերադաս կազմակերպությունների որոշումների կատարման մասին, նշվեց, որ արդեն նկատելի են կոլտնտեսության էկոնոմիկայի առաջընթացի առաջին նշանները: Անցյալ տարվա համեմատությամբ զգալիորեն ավելացել են անասնապահական մթերքների արտադրությունն ու վաճառքը պետությանը:

Շրջանային կոմիտեն և կուսկազմակերպություններն այժմ հատուկ ուշադրություն են նվիրում կուսժողովների բովանդակությանը, բարձրացնում դրանց արդյունավետությունը, քննարկում այնպիսի հարցեր, որոնք հուզում են կոլեկտիվին, առաջնակարգ նշանակություն ունեն նրա գործունեության համար: Ձգտում ենք հասնել այն բանին, որ ժողովները, իրոք, դառնան կոմունիստների դաստիարակության իսկական դպրոց, նպաստեն նրանց քաղաքական կոփմանը, բարձրացնեն անձնական պատասխանատվությունը: Մշտապես հի-

շում ենք և հաշվի առնում կուսակցության այն պահանջը, որ յուրաքանչյուր ժողով պետք է կարևոր իրադարձություն լինի կուսկազմակերպության կյանքում, դրական ներգործություն ունենա ամբողջ աշխատանքի բարելավման վրա։

Կուսշրջկոմի և կուսկազմակերպությունների կազմակերպական գործունեության կարևորագույն խնդիրներից են վերահսկողությունը և կատարման ստուգումը, սիստեմատիկ վերահսկողությունն այն բանի, թե ինչպես են կյանքում իրագործվում կուսակցության ու կառավարության և սեփական որոշումները։ Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը կատարման ստուգումը, կադրերի ընտրության հետ միասին, համարում էր գլխավորը կազմակերպչական աշխատանքում։ Նա գրել է. «Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը— ա՛յս է, դարձյալ ա՛յս է, միմիայն ա՛յս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը» (Երկեր, հ. 33, էջ 265)։

Կենսագործելով լենինյան այս ցուցումը՝ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ո՛չ միայն բացահայտում ու արձանագրում են թերությունները ու բացթողումները, այլև զբաղվում գործի պրակտիկ կազմակերպումով, մարդկանց ոտքի հանում դժվարություններն ու խոչընդոտները հաղթահարելու, արտադրության տարբեր տեղամասերում կոնկրետ արդյունքի հասնելու համար։ Դրա մեջ էլ տեսնում ենք կատարման ստուգման հիմնական նշանակությունը։ Այսպիսով, կատարման նկատմամբ հսկողության սահմանումը և բուն կատարման կազմակերպումը միմյանցից անջատ չեն, այլ միասնական պրոցես են և կազմում են յուրաքանչյուր կուսկազմակերպության կազմակերպչական գործունեության հիմքը։

Մեկ անգամ չէ, որ փոփոխվել էին շրջանի (և ոչ միայն նրա) համար կարևորագույն նշանակություն ունեցող կառույցի՝ **գյուղշին մինիստրության** Ախուրյանի № 4 տրեստի երկաթբետոնյա կառուցվածքների գործարանը շահագործման հանձնելու ժամկետները։ Բայց, երբ գործարկվող օբյեկտները ժամանակին շահագործման հանձնելու մասին ՀԿԿ Կենտկոմի որոշման կատարումը կուսկազմակերպությունը վերցրեց հսկողության տակ, գործերի վիճակն արմատապես փոխվեց. շուտով կառույցը շահագործման կհանձնվի։

Կուսշրջկոմը լրջորեն հետևում է հնգամյակի առաջադրանքների կատարման ընթացքին, մշտապես հսկում կուսկազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների, հիմնարկ-ձեռնարկությունների գործունեությանը, հաճախակի ունկնդրում նրանց հաշվետվությունը։ Վերջերս շրջկոմի բյուրոյում լսվեց Ոսկեհասկի կոլտնտեսային կուսկազմակերպության հաշվետվությունը՝ որոշումների կատարման մասին։ Հարցի ուսումնասիրման և քննարկման ընթացքում բացահայտվեցին անհանդուրժելի թերություններ, պարզվեց, որ վերադաս կուսմարմինների և սեփական որոշումները վատ են կատարվում։ Պատահական չէր, որ տնտեսության առանձին ճյուղերում անբավարար էին օգտագործվում եղած հնարավորությունները, ցածր էր արտադրության մակարդակը։ Կոմունիստ Մ. Դանիելյանին, որը չէր դրսևորում կազմակերպչական անհրաժեշտ կարողություններ, հաշտվողականություն ու ներողամտություն էր ցուցաբերում գործը ձախողողների նկատմամբ, կառչում էր գյուղատնտեսության վարման հին ձևերից ու մեթոդներից, շրջկոմի բյուրոն ազատեց կոլտնտեսության վարչության նախագահի պարտականությունից։ Իրենց պաշտոններից ազատվեցին նաև միջին օղակի մի քանի ղեկավարներ, որոնք չէին արդարացնում աշխատանքում։ Կոլտնտեսության վարչության նախագահ երաշխավորվեց Աղատանի կոլտնտեսության գլխավոր գյուղատնտես, արտադրության հմուտ կազմակերպիչ Մ. Եսայանը, իսկ միջին օղակներում աշխատանքի նշանակվեցին երիտասարդ մասնագետներ։ Շրջկոմի բյուրոյի որոշումը գոհունակությամբ ընդունվեց Ոսկեհասկի կուսկազմակերպության և կոլտնտեսականների ընդհանուր ժողովի կողմից։ Եվ, ինչպես նկատում ենք, դա ունեցավ դաստիարակչական նշանակություն, նպաստեց կուսակցական և աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, գործերի վիճակի բարելավմանը։

Վերադաս կազմակերպությունների և կուսշրջկոմի որոշումների կատա-



րումը հսկողության տակ ենք վերցնում և կատարման ստուգումը կազմակերպում շրջկոմի ու նրա բյուրոյի անդամների, պատասխանատու աշխատողների, կոմունիստների խմբերի միջոցով։ Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, դա լավ արդյունք է տալիս։ Նման ձևով ստուգել ենք անասունների ձմեռման, աշխատատար պրոցեսների մեքենայացման, գարնան-դաշտային աշխատանքների նախապատրաստման ու անցկացման մասին վերադաս մարմինների ու սեփական որոշումների կատարման ընթացքը։ Հատկանշական է, որ կատարումն ստուգող ընկերները ոչ միայն նշում և արձանագրում են եղած թերությունները, այլև օգնում կուսկազմակերպություններին՝ դրանք վերացնելու համար։

Վերջերս կուսշրջկոմի պլենումը Ալմա-Աթայում ընկեր Բրեժնևի ունեցած ելույթի լույսի տակ քննարկեց կարգապահությունն ամրապնդելու, տնտեսություններում եղած հնարավորություններն ու ռեզերվներն օգտագործելու և հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու ասպարեզում շրջանի կուսկազմակերպությունների խնդիրները։ Ձեռք բերած հաջողությունների կողքին պլենումը բացահայտեց նաև լուրջ թերություններ։ Գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման համար շրջանում եղած ռեզերվներն ու հնարավորությունները դեռևս անբավարար են օգտագործվում։ Առափիի, Ոսկեհասկի, Կառնուտի, Արևիկի, Երազգավորսի, Կապսի և Այգաբացի տնտեսությունները ետ են մնում շրջանի միջին մակարդակից, բնակլիմայական միևնույն պայմաններում գտնվող տնտեսությունների համեմատությամբ ունեն ցածր արդյունքներ։ Որոշ տնտեսություններ չունեն կայուն ցանքաշրջանառություն։ Հանրային հոտում դեռևս ցածր է մայր անասունների տեսակարար կշիռը։ Մի շարք տնտեսություններում (Ախուրյան, Մուսայելյան, Կամո, Արևիկ, Ոսկեհասկ և այլն) թերակատարվում են կովերի գլխաքանակի ավելացման առաջադրանքները։

Պլենումը նշեց բացահայտած թերությունների վերացման, կուսակցական, պետական, աշխատանքային կարգապահության ամրապնդման, կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման ուղիները։ Շրջանում գյուղատնտեսության հետագա զարգացումն ապահովելու նպատակով կուսշրջկոմի բյուրոյի և շրջսովետի գործկոմի առջև խնդիր դրվեց ստեղծել միջտնտեսային կոմպլեքսային խոշոր ֆերմաներ, մատղաշների աճեցման ու բտման միջտնտեսային ձեռնարկություն, 10 հազար տոննա կարողությամբ համակցված կերի գործարան։ Ետ մնացող տնտեսությունների ղեկավարներից ու կուսկազմակերպություններից պահանջվեց հանրային հոտում ավելացնել մայրական կազմի տեսակարար կշիռը, պայքարել անկումների կանխման, ստերջության վերացման համար, ամեն կերպ ապահովել անասնապահական մթերքների արտադրության պլանների կատարումը։

Մեր ամենակարևոր խնդիրներից է կոմունիստների, բոլոր կադրերի պատասխանատվության բարձրացումը՝ իրենց պարտականությունները բարեխղճորեն կատարելու, նախատեսված միջոցառումներն իրականացնելու համար։ Յուրաքանչյուր աշխատող, առավել ևս ՍՄԿԿ անդամները պարտավոր են ցույց տալ կազմակերպվածության, կարգապահության, խոսքի ու գործի միասնության օրինակ։ Իսկ այդ պահանջներն իրականացնելու համար անհրաժեշտ է ապահովել իսկական կուսակցական վերահսկողություն, առաջին հերթին, որոշումների, պարտավորությունների և հանձնարարությունների կատարման նկատմամբ։ Իսկ վերահսկողությունը, նախ և առաջ, կադրերի հետ տարվող աշխատանքի լավագույն ձև է, նրանց գործարարությամբ, պատասխանատվությամբ և բարձր կարգապահությամբ դաստիարակելու միջոց։ Կատարման ստուգումը կոմունիստական շինարարության, կուսակցական ղեկավարման կարևորագույն պայմանն է։ Կատարելագործել հսկողությունը և կատարման ստուգումը, նշանակում է է՛լ ավելի հետևողականորեն և հաստատակամորեն պայքարել իններորդ հնգամյակի խնդիրները հաջողությամբ լուծելու համար։ Մեզ համար գործողության ուղեցույց է ՍՄԿԿ XXIV համագումարի այն դրույթը, ըստ որի «Աշխատողների անձնական պատասխանատվությունը բարձրացնելու գործում կոչված է կարևոր դեր խաղալ կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման՝ լավ հիմքերի վրա դրված ստուգումը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 133)։

# ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆԸ՝ ՄՇՏԱԿԱՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

Լ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿԿ Աշտարակի շրջկոմի երկրորդ քարտուղար

*Կոմունիստական շինարարության արդի ժամանակաշրջանում էկոնոմիկայի մշտական վերելքի ու բազմաճյուղայնության, գիտատեխնիկական հեղափոխության արագացման, արտադրական պլանների մշտական աճի կապակցությամբ տնտեսական խնդիրներն անհամեմատ բարդացել են։ Ուստի, այժմ առանձնապես կարևոր է սովորել տնտեսավարման, կառավարման առաջավոր մեթոդները։ Այդ առումով աստիճանաբար աճում է աշխատավորների համընդհանուր տնտեսագիտական ուսուցման դերը։ Վերջին տարիներս ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած՝ ժողովրդական համալսարանների, կոմունիստական աշխատանքի դպրոցների, աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու, սոցիալիստական մրցությունը ծավալելու վերաբերյալ որոշումները խոշոր նշանակություն ունեցան կադրերի տնտեսագիտական ուսուցումը հաջողությամբ կազմակերպելու գործում։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. սեպտեմբերի «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» որոշման հրապարակումից հետո ՀԿԿ Աշտարակի շրջկոմի բյուրոն հաստատեց և սկզբնական կուսկազմակերպություններին ուղարկեց այդ որոշման կենսագործման համար շրջկոմի միջոցառումների հնգամյա պլանը։ Ըստ այդ պլանի, ինչպես հանձնարարված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ, իններորդ հնգամյակում բոլոր ղեկավար կադրերը, մասնագետները, բանվորները, ծառայողներն ու կոլտնտեսականները պետք է ընդգրկվեն տնտեսագիտական ուսուցման տարբեր օղակներում։ 1971—72 ուստարում տնտեսագիտական կրթության ցանցում ընդգրկվեցին ղեկավար կադրերի 100, մասնագետների՝ 50, բանվորների և կոլտնտեսականների՝ 20 տոկոսը, հաջորդ ուստարում մասնագետների՝ 100, բանվորների ու կոլտնտեսականների՝ 40 տոկոսը։ Իսկ ընթացիկ ուսումնական տարում տնտեսագիտական ուսուցման ցանցում ներգրավված էր բանվորների ու կոլտնտեսականների մոտ 70—80 տոկոսը։*

*Հարազատ մնալով ՍՄԿԿ Կենտկոմի որոշման ոգուն ու պահանջներին, ամբողջ բնակչության տնտեսագիտական կրթության գործը հնգամյակում ավարտելու համար, մենք ուսուցման սիստեմը կազմակերպեցինք շերտավորված՝ հաշվի առնելով արտադրական ճյուղերի, ձեռնարկությունների յուրահատկությունները։ Այդ ասպարեզում մեր գործունեությունը ծավալեցինք երեք հիմնական ուղղությամբ։ Նախ՝ ղեկավար կադրերի և մասնագետների համար ստեղծեցինք կուսակցական ակտիվի դպրոց՝ երեք խմբով. շրջկենտրոնի կուսակցական ու սովետական ակտիվի, շինարարության ղեկավարների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների, կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական ղեկավարների և գյուղատնտեսական մասնագետների։ Ակտիվի դպրոցում ընդգրկվեց 90 մարդ։ Երկրորդ, հիմնական մասի՝ բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների, տնտեսագիտական ուսուցումը կազմակերպում ենք կուսակցական քաղուսուցման բոլոր օղակներում, կոմունիստական*



*աշխատանքի, տնտեսագիտական երկամյա դպրոցներում, ժողովրդական հա-
մալսարաններում, մշտական գործող լեկտորիումներում։ Երրորդ, բնակչու-
թյան մնացած բոլոր խավերի, գյուղատնտեսության, արդյունաբերության,
շինարարության և սպասարկող կազմակերպությունների աշխատողների ու-
սուցումը իրականացնում ենք պրոպագանդայի մասսայական ձևերի կիրառ-
ման և կուլտուր-լուսավորական աշխատանքի միջոցով։ Տնտեսագիտական ու-
սուցմանը չմասնակցողների համար կազմակերպում ենք դասախոսություններ,
բանավոր ամսագրեր, հարց ու պատասխանի և առաջավոր փորձի ընդհանրաց-
ման երեկոներ, հանդիպումներ և այլն։*

*Կուսշրջկոմին կից գործող ակտիվի դպրոցի ունկնդիրներն ուսումնասիրում
են ՍՄԿԿ տնտեսական քաղաքականությունը, կուսակցական ու սովետական
շինարարության հարցերը։ Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում ար-
տադրության ղեկավարման ու կառավարման պրոբլեմների ուսումնասիրությա-
նը։ Դպրոցում ուսման որակի բարձրացմանը մեծապես նպաստում է նաև այն,
որ պարապմունքներում, շրջանի կուսակցական, սովետական ու տնտեսական
ակտիվից բացի, դասախոսություններ են կարդում հանրապետության ճանաչ-
ված տնտեսագետները։*

*Կուսակցական դպրոցի երեք խմբերի ունկնդիրները ուսումնական տարվա
ընթացքում հաճախ հավաքվում են, համատեղ դասախոսություններ լսում, իսկ
սեմինարներին մասնակցում ըստ խմբերի։ Դպրոցի պարապմունքները միշտ
էլ հետաքրքրական ու արդյունավետ են, նրանցում պարբերաբար քննարկվում
են ունկնդիրների ռեֆերատները։ Հաջողությամբ անցավ ունկնդիր Ժ. Քամալ-
յանի (№ 11 ճանշինվարչության պետ) ռեֆերատը՝ «ՍՄԿԿ XXIV համագումարը
տնտեսության կառավարման սիստեմի կատարելագործման մասին» թեմայով։
Ուշագրավ էր, որ հեղինակը հանգամանորեն ցույց տվեց, թե ունկնդիրներն
ինչպես են խորամուխ լինում տնտեսական հարցերի մեջ, ինչպիսի հետևու-
թյունների են հանգում, ինչ գործնական քայլերի են դիմում՝ իրենց ղեկավա-
րած կոլեկտիվի արտադրական գործունեությունը բարելավելու համար։ Ժ.
Քամալյանն իրենց շինվարչությունից բերած կոնկրետ օրինակներով, դիա-
գրամներով և ցուցադրական այլ նյութերով հիմնավորեց տնտեսության գի-
տական կառավարման դերը արտադրության կատարելագործման և աշխա-
տանքի արտադրողականության բարձրացման գործում։ Նա պատմեց, որ
վարչությունն սկսել է հատուկ ուշադրություն նվիրել նորարարական և գյու-
տարարական բյուրոյի գործունեությանը, խրախուսել նորարարական շարժումն
ու դրա մասնակիցներին։ Այսպես, վարչության 1.000 տոննանոց բետոնի
հորը տաքացվում էր գոլորշիով։ Դա կապված էր զգալի ծախսերի հետ։ Շու-
տով գծային մեխանիկ Ռ. Ճանճապանյանն առաջարկեց այն տաքացնել էլեկ-
տրականությամբ։ Նորարարական առաջարկության ներդրումը տվեց 17 հազար
ռուբլու տարեկան պայմանական օգուտ։ Ինժեներներ Ց. Դավթյանի և Ա. Կա-
րապետյանի առաջարկությամբ փոխվեց Աշտարակ—Օհանավան ճանապարհի
երկաթբետոնյա հենապատի կառուցվածքը, որի շնորհիվ տնտեսվեց 34 հազար
ռուբլի։*

*Գործարար մթնոլորտում անցավ Վ. Ղարիբյանի «Աշխատանքի արտա-
դրողականության բարձրացման հիմնական գործոնները և ուղիները» թեմայով
ռեֆերատի քննարկումը։ Դպրոցի ունկնդիրներից շատերն ակտիվորեն մաս-
նակցեցին դրան։ Բովանդակալից էր ունկնդիր Ք. Վարդանյանի (գյուղական
շինարարության մինիստրության № 2 տրեստի կառավարիչ) ելույթը։ Նա
տրեստի տարբեր տեղամասերի գործունեության օրինակներով և փաստերով
հիմնավորեց գիտության նվաճումների ներդրման և արտադրանեղերվների
ճիշտ օգտագործման նշանակությունը շինարարության մեջ աշխատանքի ար-
տադրողականության բարձրացման գործում։ Տեսական հարցերի պարզաբա-
նումն ավելի հասկանալի և համոզիչ դարձավ, երբ նա ցույց տվեց, որ միա-
նույն պայմաններում գտնվող շինարարական տեղամասերն ունեն ոչ միա-
նման արտադրողականություն, որովհետև տարբեր ձևերով և մակարդակով են
օգտագործում գիտության նվաճումները, արտադրանեղերվներն ու տեխնիկան։*

Ունկնդիր Խ. Բասենցյանը (շրջբանկի կառավարիչ) շրջանի առանձին տնտեսությունների օրինակով ցույց տվեց, թե, լավ արդյունքի հասնելիս, ինչքանով է շահում տնտեսությունը և բարձրանում կոլտնտեսականի կամ սովխոզի բանվորի տարեկան հասույթը։

Ակտիվի դպրոցի առանձին պարապմունքներ անցկացվում են տեսական և գիտապրակտիկ կոնֆերանսների ձևով։ Այսպես, տեսական էկոնոմիկական կոնֆերանս ենք հրավիրել «Գյուղատնտեսական արտադրության արդյունավետության հետագա բարձրացման ուղիները», «ՍՄԿԿ XXIV համագումարը գիտա-տեխնիկական առաջընթացի հիման վրա հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման մասին» թեմաների շուրջ։

Այժմ բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների տնտեսագիտական ուսուցման մասին։ 1971—72 ուստարվանից աշխատավորների տնտեսագիտական կրթության առանձնահատուկ տեղ հատկացվեց կուսակցական լուսավորության սիստեմում։ Ուսուցման բոլոր ձևերում ավելացավ անկուսակցական ունկնդիրների թիվը։

Ինչպես ամենուրեք, այնպես էլ մեզ մոտ ձևավորվեց առանձին տնտեսագիտական ուսուցման սիստեմ։ Աշխատավորներն անցած ուստարում տնտեսագիտություն և ՍՄԿԿ տնտեսական քաղաքականություն էին ուսումնասիրում 18 քաղդպրոցներում և 6 տեսական սեմինարներում։ Շրջանում գործում էր տնտեսագիտական և կոմունիստական աշխատանքի 70 դպրոց՝ ավելի քան 1.700 ունկնդիրներով։

Մենք հոգում ենք ուսման որակի բարձրացման մասին։ Պրոպագանդիստներին սիստեմատիկաբար ցույց տրվող մեթոդական օգնությամբ հիմնականում կանխել ենք այն թերությունը, երբ ոմանք պարապմունքի ժամանակ գլխավոր ուշադրությունը սևեռում էին միայն նյութի տեսական կողմին և այն չէին կապում գործնական խնդիրների, պրակտիկ կյանքի հետ։ Կամ, ընդհակառակը, երբեմն էլ առանձին պրոպագանդիստներ, թողնելով տեսական հարցերի վերլուծությունը, առաջնությունը տալիս էին միայն պրակտիկ օրինակներին, դրանք չէին հիմնավորում տեսականորեն. պարապմունքը վեր էր ածվում արտադրական խորհրդակցության։

Ուսման որակի բարձրացմանը մեծապես նպաստեց առանձին կազմակերպություններում տնտեսագիտական կաբինետների ստեղծումը։ Սասունիկի սովխոզում և № 2 «Գյուղշին» տրեստում գործող տնտեսագիտական կաբինետները տեսական-մեթոդական բազմակողմանի օգնություն են ցույց տալիս տնտեսագիտական դպրոցների ղեկավարներին և ունկնդիրներին։ Կաբինետներում առանձնացվել են անհրաժեշտ գրականություն, օժանդակ տեղական նյութեր, պատրաստվել ցուցափեղկեր, դիագրամներ։ Այստեղ հաճախ անցկացվում են կոնսուլտացիաներ, հարցազրույցներ և այլ միջոցառումներ։

Տնտեսագիտական դպրոցների ղեկավարների հետ սիստեմատիկ աշխատանք է տանում նաև կուսշրջկոմի քաղլուսկաբինետին կից գործող մեթոդական խումբը։

Ուսումնասիրվող թեմաներն ավելի պարզ ու մատչելի դարձնելու նպատակով՝ կուսկազմակերպությունները ծրագրային թեմաների շուրջ անցկացնում են հարցազրույցներ, տնտեսագիտական, գիտապրակտիկ կոնֆերանսներ։ Այսպես, տրիկոտաժի ֆաբրիկայում դեկտեմբեր ամսին անցկացվեց գիտապրակտիկ կոնֆերանս՝ «Տնտհաշվարկը և ձեռնարկության շահութաբերության բարձրացման ուղիները» թեմայով։ Զեկուցմամբ հանդես եկավ ֆաբրիկայի ավագ տնտեսագետ Է. Խաչատրյանը։ Նա մանրամասնորեն շոշափեց հետևյալ խնդիրները՝ տնտհաշվարկի հիմնական սկզբունքները, շահույթը և նրա օգտագործումը, ձեռնարկության շահութաբերությունն ու դրա բարձրացման ուղիները, ներտնտհաշվարկի կազմակերպումը։ Զեկուցողը նախ տվեց այդ խնդիրների տեսական հիմնավորումը, ապա բացատրեց, թե ինչպես են իրականացվում դրանք իրենց ֆաբրիկայում, նշեց կոնկրետ ուղիներ ու միջոցներ՝ ձեռնարկությունում անարտադրողական ծախքերը կրճատելու, արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու և շահութաբերությունը բարձրացնելու համար։ Նա



պարզաբանեց, որ ընդհանուր ծախսումների մեջ առանձին տարրերի հարաբերակցությամբ է որոշվում արտադրության ծախքերի կառուցվածքը, շեշտեց այդ գործում հումքի և նյութերի խնայողության կարևոր նշանակությունը։ Ապա ֆաբրիկայի գործունեության կոնկրետ օրինակներով պարզաբանեց նաև նյութական խթանման ֆոնդերի ստեղծման խնդիրը, հատկացումների գոյացման ուղիները, ցույց տվեց, թե տնտեսավարման նոր մեթոդով աշխատելը ինչպիսի կարևորություն ունի բանվորի նյութական շահագրգռվածության բարձրացման համար։

Ելույթների միջոցով ավելի մանրամասն քննարկվեցին զեկուցման մեջ առաջ քաշված խնդիրները։ Հանդես եկան ինչպես ղեկավար աշխատողներ և մասնագետներ, այնպես էլ բանվորներ։ Աշտարակի քաղաքային ֆինբաժնի տնտեսագետ Պողոսյանը մանրամասնորեն վերլուծեց ֆաբրիկայի 1973 թ. 9 ամիսների ֆինանսատնտեսական գործունեությունը, հաջողությունների հետ մեկտեղ նշեց շահութաբերության բարձրացման այն միջոցներն ու ռեզերվները, որոնք կան ձեռնարկությունում, սակայն չեն հայտաբերվել և օգտագործվել։ Կոնֆերանսն անցավ մեծ ակտիվության պայմաններում։

Աշխատավորների տնտեսագիտական ուսուցման հաջողությունը, առաջին հերթին, պայմանավորված է համապատասխան դպրոցների պրոպագանդիստների ճիշտ ընտրությամբ։ Կուսշրջկոմը առանձնակի ուշադրություն է նվիրում այդ գործին. դպրոցների ղեկավարումը վստահում ենք տնտեսագիտական համապատասխան կրթություն և գիտելիքներ, ինչպես նաև պրոպագանդիստական աշխատանքի փորձ ունեցող ընկերների։

Մեծ կարևորություն ենք տալիս նաև տնտեսագետ-պրոպագանդիստների պատրաստմանը։ Այս ուսումնական տարվանից շրջկոմին կից գործում է պրոպագանդիստների տեսական ու մեթոդական վարպետության բարձրացման դպրոց, որտեղ ընդգրկված են տնտեսագիտական և կոմունիստական աշխատանքի դպրոցների ղեկավարներն ու պրոպագանդիստները։ Նրանց համար դասախոսություններ են կարդում Երևանից հրավիրված անվանի տնտեսագետներ, շրջանի ղեկավար աշխատողներ։ Վարպետության բարձրացման դպրոցը արդյունավետ է գործում և ուսանելի փորձ է կուտակել։ Ունկնդիրները համատեղ լսում և քննարկում են տնտեսագիտական որևէ դպրոցի պարապմունք։ № 2 «Գյուղշին» տրեստի տնտեսագիտական պարապմունքներին, օրինակ, մասնակցեցին շինարարական, արտադրական, առևտրի ու տրանսպորտի ձեռնարկությունների տնտեսագիտական դպրոցների ղեկավարները։ Այնուհետև տեղի ունեցավ մտքերի աշխույժ փոխանակություն։ Մասնակիցները քննարկեցին ո՛չ միայն տեսական, այլև մեթոդական հարցեր։ Բաց պարապմունքը մեծ աշխուժություն առաջացրեց ունկնդիրների շրջանում, այն բարձրացրեց ինչպես ուսուցղեկավարների, այնպես էլ ունկնդիրների պատասխանատվությունը՝ ուսուցման բարձր որակն ապահովելու գործում։ Բաց պարապմունք ենք անցկացրել նաև Բյուրականի սովխոզի տնտեսագիտական հիմունքների դպրոցում։

Աշխատավորների տնտեսագիտական կրթության սիստեմում ընդգրկվածներին և դրանից դուրս մնացած բնակչության տարբեր խավերին տնտեսական գիտելիքներ հաղորդելն իրականացնում ենք պրոպագանդայի մասսայական ձևերի միջոցով։ Այդ նպատակով կուսշրջկոմը ղեկավարում և կոորդինացնում է ԼԿԵՄ շրջկոմի, շրջսովետի ու քաղսովետի գործկոմների կուլտուրայի բաժինների, արհմիության շրջկոմների, «Գիտելիք» ընկերության գործունեությունը։ Օգտագործելով նշված կազմակերպություններին տրված հնարավորությունները՝ կուսշրջկոմը նրանց հետ ստեղծել է ժողովրդական համալսարաններ, լեկտորիումներ, անցկացրել ցիկլային դասախոսություններ, հարց ու պատասխանի երեկոներ, էքսկուրսիաներ, մասսայականացրել առաջավոր փորձը, պրոպագանդայի զանազան մասսայական ձևերով աշխատավորությանը տվել տնտեսական գիտելիքներ։ Այսպես, 1972—73 թթ. շրջկենտրոնում հաջողությամբ գործեց տնտեսագիտական երկամյա համալսարանը՝ 150 ունկնդիրներով։ Անցած ուստարում հինգ խոշոր սովխոզներում (Աշտարակի, Օշականի, Ոսկեվազի, Սասունիկի, Ուջանի) գործում էին տնտեսագիտական լեկտորիումներ՝

1.100 ունկնդիրներով։ Դրանք ամեն ամիս ունենում էին պարապմունք, որն ուղեկցվում էր կինոցուցադրումով։ Լեկտորիումում ուսումնասիրում են 30 թեմա, որոնք բացառապես վերաբերում են գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերին։

ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. «Աշխատավորության տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» որոշումից հետո, նոր թափ հաղորդվեց տնտեսագիտական թեմաներով դասախոսական պրոպագանդային։ Կուսշրջկոմի դասախոսական խմբի և «Գիտելիք» ընկերության սկզբնական կազմակերպությունների դասախոսությունների թեմատիկան հարստացվեց տնտեսագիտական բնույթի թեմաներով։ Բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում, արտադրական ու շինարարական ձեռնարկություններում կարդացվում են դասախոսություններ ու զեկուցումներ, անցկացվում հարցազրույցներ։ Դասախոսական պրոպագանդային ակտիվորեն մասնակցում են կոլտնտեսությունների ու սովխոզների, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, համապատասխան կրթություն ունեցող մասնագետներ։

Դրական արդյունք են տալիս տնտեսագիտական թեմաներով շրջանի էկոնոմիկայի տարբեր ճյուղերի կարևոր հարցերին նվիրված գիտա-արտադրական կոնֆերանսները։ Յուրաքանչյուր տարի շրջկոմի քաղլուսկաբինետում 3—4 անգամ անցկացվում է գիտա-արտադրական կոնֆերանս, որտեղ զեկուցումներով հանդես են գալիս վաստակաշատ գիտական աշխատողները։ Վերջերս տեղի ունեցած գիտա-արտադրական կոնֆերանսներում գործարար մթնոլորտում քննարկվեցին քարքարոտ հողերի իրացման և պարարտանյութերի օգտագործման հարցերը։ Երբեմն նման գիտա-արտադրական կոնֆերանսներ ենք կազմակերպում նաև շրջանի խոշոր գյուղերում։

Աշխատավորության տարբեր խավերի տնտեսագիտական ուսուցման գործին մեծ չափով օգնում են ցիկլային դասախոսությունները։ 1972—73 և անցած ուստարիներին շինարարության, ֆինանսների, առևտրի և կենցաղսպասարկման բնագավառների աշխատողների համար կազմակերպեցինք նման թեմաներով տասնյակ դասախոսություններ։ Դասախոսություններով հանդես են եկել ո՛չ միայն շրջանի, այլև հանրապետության ղեկավար աշխատողներ։ Օրինակ՝ շինարարները դասախոսություններ են լսել շինարարության զանազան պրոբլեմների՝ կառուցման ժամկետների կրճատման, նոր հզորությունների գործարկման մասին, գիտատեխնիկական առաջընթացի, շինարարական աշխատանքների մեքենայացման ու կատարելագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման ու այլ թեմաների վերաբերյալ։

Աշխատավորների տնտեսագիտական կրթության գործը միշտ եղել է կուսշրջկոմի հոգածության առարկան։ Շրջկոմը, նրա պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը և քաղլուսկաբինետն այդ ասպարեզում համապատասխան օգնություն ու ղեկավարություն են ցույց տալիս սկզբնական կուսկազմակերպություններին։ Քաղլուսկաբինետին կից ստեղծված է 11 մարդուց բաղկացած տնտեսագիտական խորհուրդ, որի անդամներն ունկնդրում են դպրոցների պարապմունքները, մեթոդական խորհուրդներ տալիս պրոպագանդիստներին, ամիսը երկու անգամ, նախապես սահմանված օրերին, կազմակերպում տնտեսագիտական թեմաներով դասախոսություններ։ Քաղլուսկաբինետն ստեղծել է «Օգնություն տնտեսագիտության ուսումնասիրողներին» անկյուն, որտեղ առանձնացրել է համապատասխան տեսական ու մեթոդական գրականություն, դիդակտիկ նյութեր, որոնցից օգտվում են տնտեսագիտական դպրոցների ղեկավարները և քաղինֆորմատորները։ Նրանց տրամադրվում են նաև տեղական փաստեր ու տվյալներ։

Աշխատավորների տնտեսագիտական կրթության հարցը, ըստ առանձին կազմակերպությունների, պարբերաբար քննարկվում է կուսշրջկոմի բյուրոյում։ Շրջկոմի պլենումը ևս անցած տարվա դեկտեմբերին անդրադարձավ դրան։ Հասկանալի է, իրականացվող միջոցառումներն օգնում են բնակչության տնտեսագիտական կրթության բարելավմանը, ուսուցման քաղաքական-գաղափարական մակարդակի և արդյունավետության բարձրացմանը։



Սակայն պետք է խոստովանել, որ աշխատավորների տնտեսագիտական կրթության կազմակերպման գործում շրջանի կուսկազմակերպություններում կան նաև լուրջ թերություններ։ Բոլոր կազմակերպությունները չէ, որ պատշաճ ուշադրություն են նվիրում տնտեսական գիտելիքների պրոպագանդմանը և աշխատավորների ուսուցմանը։ Մի շարք սովխոզներում, կոլտնտեսություններում, հիմնարկ-ձեռնարկություններում (Արտաշավանի, Կոշի, Արուճի սովխոզներ, № 3 շինվարչություն, շինարարական իրերի կոմբինատ) անբավարար է կազմակերպվում աշխատավորների տնտեսագիտական կրթության գործը։ Տնտեսագիտական դպրոցներում թույլ է կարգապահությունը, ունկնդիրների մի մասը բացակայում է պարապմունքներից, շատերը ապահովված չեն համապատասխան գրականությամբ, պարապմունքներին մասնակցում են առանց հանձնարարված նյութը նախապատրաստելու, պասսիվություն ցուցաբերում տեսական հարցերի քննարկման ժամանակ։

ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» որոշման մեջ ասվում է, որ աշխատավորների տնտեսագիտական կրթության գործով, առաջին հերթին, պետք է զբաղվեն կոլտնտեսությունների, սովխոզների, հիմնարկ-ձեռնարկությունների, մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարները, իսկ կուսկազմակերպություններն անհրաժեշտ ղեկավարություն ու օգնություն ցույց տան նրանց։ Սակայն, իրականում, այդ հարցով զբաղվում են միայն կուսկազմակերպությունները, իսկ տնտեսական ղեկավարները հաճախ դա իրենց գործը չեն համարում։ Վիճակը կփոխվի և հիմնովին կբարելավվի միայն այն դեպքում, երբ տնտեսագիտական ուսուցման հարցերով զբաղվեն տնտեսական ղեկավարները և անհրաժեշտ պահանջկոտություն հանդես բերեն իրենց ենթակա կազմակերպությունների նկատմամբ։

Կադրերի տնտեսագիտական ուսուցումն ավելի արդյունավետ կդառնա, եթե «Հայաստան» հրատարակչությունը լույս ընծայի ծրագրային թեմաներին համապատասխան դիտողական նյութեր, որոնց օգտագործումը կնպաստի տեսական հարցերի ավելի խոր ըմբռնմանը։ Լավ կլինի, եթե մամուլում ավելի հաճախակի զետեղվեն պրոպագանդիստական աշխատանքի մասին հոդվածներ, ընդհանրացվի լավագույն պրոպագանդիստների փորձը, իսկ ռադիոյով և հեռուստատեսությամբ պարբերաբար հաղորդումներ տրվեն ծրագրային թեմաների շուրջը, դրանք պարզաբանվեն ու հիմնավորվեն նաև հանրապետության տնտեսությունների գործունեության դրական օրինակներով։

Ղեկավար կադրերի, բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների, բնակչության բոլոր խավերի տնտեսագիտական ուսուցումն արդիական նշանակություն ունեցող պատասխանատու ու պատվավոր գործ է։ Տնտեսագիտությամբ նրանց զինելը կարևոր գործոն է մեր երկրի ժողովրդական տնտեսությունը գիտականորեն վարելու, իններորդ հնգամյակում կուսակցության տնտեսական քաղաքականությունը պատվով իրականացնելու համար։

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՍՏՈՐԻՆ ՕՂԱԿՆԵՐԻ ՂԵԿԱՎԱՐՈՒՄԸ

**Գ. Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան
քիմկոմբինատի կուսկոմիտեի քարտուղար

Արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունները և կուսխմբերը կուսակցության ստորին օղակներն են, որոնք մշտապես շփվում են աշխատանքի մարդկանց հետ, ապրում արտադրության հոգսերով։ Այդ օղակներում կոմունիստներն ավելի քաջածանոթ են լինում գործերի վիճակին, միմյանց ունակություններին, քաղաքական հասունության աստիճանին, ընտանեկան ու կենցաղային պայմաններին։ Հետևաբար, կուսկազմակերպության մարտունակության բարձրացումը, ձեռնարկության տեխնիկա-տնտեսական հաջողությունները պայմանավորված են նաև կուսակցության ստորին օղակների արդյունավետ գործունեությամբ։ Կուսկազմակերպությունները շատ հարցեր լուծում են նրանց միջոցով ու անմիջական օգնությամբ։ Ահա թե ինչու Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմկոմբինատի կուսկոմիտեն ուշադրության կենտրոնում է պահում կուսխմբերի ու արտադրամասային կուսկազմակերպությունների ճիշտ ղեկավարման ու նրանց ցույց տրվող օգնության հարցերը։ Այժմ մեզ մոտ գործում են 21 արտադրամասային սկզբնական կուսկազմակերպություններ և 49 կուսխմբեր։ Դրանք ստեղծվել են հերթափոխություններում, բաժանմունքներում, տեղամասերում, ծառայություններում, բաժիններում և վերջապես՝ արտադրամասերում։

Այդ օղակներն զբաղվում են արտադրությանը և մարդկանց քաղաքական-գաղափարական դաստիարակությանն ու կենցաղին վերաբերող բազմաբնույթ հարցերով, միջոցներ ձեռնարկում դրանք լուծելու համար։ Այսպես, այս տարվա ապրիլի սկզբին ամոնիակի արտադրությունում նախատեսվում էր կատարել թթվածնի անջատման ագրեգատի և դրա հետ կապված՝ սառնարանների, խողովակների ու կոնդենսատորների նախազգուշական նորոգում։ Դա լուրջ քննություն էր։ Տեխնիկական ծառայությունը կազմեց նորոգման ցանցային գրաֆիկ, որով նախատեսվում էր, թե յուրաքանչյուր ժամում ինչ աշխատանք պետք է կատարվեր։ Նորոգումն իրականացնելու էր մեխանիկական ծառայությունը և հատուկ կազմակերպության մեկ բրիգադա։

Մեխանիկական ծառայության կուսխումբը նորոգման հարցը քննարկեց իր ժողովում։ Կոմունիստներն ստացան կոնկրետ հանձնարարություններ։ Կուսխմբի նախաձեռնությամբ հարցը դրվեց նաև արտադրության կուսբյուրոյի նիստի քննարկմանը։ Այստեղ մանրամասնորեն, ըստ ցանցային գրաֆիկի, ուսումնասիրվեցին կատարվելիք աշխատանքի ծավալն ու բնույթը։ Կուսբյուրոն որոշեց խնայել ժամանակը, կրճատել կրկնվող օպերացիաները, բարձրացնել նորոգման որակը և այդ կապակցությամբ համապատասխան հանձնարարություններ տվեց նորոգող բրիգադաներին և դրանցում ընդգրկված կոմունիստներին։ Քիմիական արդյունաբերության մինիստրության նորմաների համաձայն, նման ագրեգատի ցանցային գրաֆիկով նորոգման ժամկետը երեք ամիս է, սակայն կուսբյուրոն, հաշվի առնելով առկա հնարավորությունները, որոշեց



այն կատարել 24 օրում։ Հետագայում այդ ժամկետը ևս կրճատվեց երեք օրով, որի ընթացքում արտադրվեց մի քանի տոննա ամոնիակ։

Արդյունավետ գործունեություն են ծավալում նաև Դ. Մաղաքյանի, Կ. Հարությունյանի (կորունդի արտադրամաս), Ա. Ազարյանի (ջերմային արտադրամաս), Վ. Դավոյանի (ամոնիակի արտադրամաս) և ուրիշների ղեկավարած կուսխմբերը։ Նրանք ամիսը 1—2 անգամ հրավիրում են կուսխմբի ժողովներ, քննարկում զանազան հարցեր, անցկացրած միջոցառումների մասին գրանցումներ անում հատուկ օրագրերում, առանձին կարևոր հարցեր ներկայացնում արտադրամասային կուսկազմակերպությունների ժողովների քննարկմանը։

Կուսխմբերի ակտիվ գործունեությունը պայմանավորված է դրանց նկատմամբ կուսբյուրոների ու կուսկոմիտեների ցուցաբերած ամենօրյա հոգատարությամբ։ Մեր պարտքն է մշտապես օգնել կուսխմբերին, նրանց գործունեությունն ուղղել ձեռնարկության առջև ծառացած խնդիրների լուծմանը, հնգամյակի առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարմանը։ Կուսակցությունը հիշեցնում է, որ կուսխմբերը կարող են վճռական ուժ դառնալ, եթե նրանք գտնվեն իրենց կոչման բարձրության վրա, եթե նրանց ցույց տրվի կոնկրետ ղեկավարություն և օգնություն։

Կուսկոմիտեն կուսխմբերի ղեկավարությունն իրականացնում է զանազան ձևերով ու մեթոդներով։ Ամենակարևորը՝ ոչ թե խնամակալություն ենք անում կամ ղեկավարում վարչական ձևերով, այլ հետաքրքրվում ենք նրանց հոգսերով, գործնական օգնություն ցույց տալիս կուսխմբերի ղեկավարներին։ Օգնության արդյունավետ ձև է կուսխմբերի գործունեության հետ առնչվող խնդիրների քննարկումը։ «Անհատական աշխատանքի դրվածքը կորունդի արտադրամասի «Ա» հերթափոխության կուսխմբերում», «Կուսակցական հանձնարարությունների կատարման վիճակը կուսխմբերում», «Ագիտացիոն աշխատանքի դրվածքը կուսխմբերում», «Կուսխմբերի կատարած աշխատանքը հումքի և օժանդակ նյութերի խնայողության ասպարեզում» հարցերի քննարկումները բարերար ազդեցություն են գործել կուսխմբերի գործունեության վրա, նպաստել նրանց աշխատանքի աշխուժացմանը, ակտիվության աճին ու նախաձեռնության զարգացմանը։

Սակայն կուսակցության հիմքը բոլոր դեպքերում սկզբնական կուսկազմակերպություններն են։ Դրանց միջոցով ենք լուծում կոմբինատի առջև ծառացած տնտեսական, կազմակերպական, գաղափարական ու քաղաքական խնդիրները։ Արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունը ներառնում է մի քանի կուսխմբեր։ Հետևաբար, վերջիններիս գործունեության բարելավմամբ ամրապնդվում է նաև սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը, աճում նրանց դերն ու հեղինակությունը։

Կուսկոմիտեն մշտական օգնություն է ցույց տալիս արտադրամասային սկզբնական կուսկազմակերպություններին, բարձրացնում նրանց պատասխանատվությունը արտադրության զարգացմանը, մարդկանց դաստիարակությանն առնչվող հարցերի լուծման գործում, կիրառում ղեկավարման տարբեր ձևեր ու մեթոդներ։

1973 թ. նոյեմբերի 29-ին կոմբինատի կուսկազմակերպության կոնֆերանսը, արժեքավորելով ներկուսակցական աշխատանքի մեր ձեռքբերումները, միաժամանակ պահանջեց կուսկոմիտեից՝ շերտավորված մոտեցում դրսևորել արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունների նկատմամբ, նրանց ցույց տալ համակողմանի օգնություն և այդ գործին մասնակից դարձնել կուսակցական ակտիվին։ Կոնֆերանսի որոշումը կատարելու նպատակով կուսկոմիտեն ստեղծեց գաղափարական, ներկուսակցական աշխատանքի, ՍՄԿԿ շարքերի ընդունելության, բողոքարկման (ապելյացիոն) հարցերի, արտադրության զարգացման հանձնաժողովներ, որոնցում ներգրավվեցին ակտիվ, սկզբունքային կոմունիստներ։ Ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողություն իրականացնող հանձնաժողովների հետ նրանք հանգամանորեն ուսումնասիրում են կուսկազմակերպության ղեկավարման բոլոր բնագավառները, բացահայտում ինչպես տնտեսական, այնպես էլ կուսակցական

աշխատանքի թերությունները, օգնում սկզբնական կուսկազմակերպություններին՝ լուծելու այս կամ այն հարցը:

Կուսկոմիտեի այդ հանձնաժողովները արտադրամասային կուսկազմակերպություններում ուսումնասիրում են ժողովների նախապատրաստման, բյուրոների նիստերի անցկացման, ընդունած որոշումների կատարման, կոմունիստների քաղաքական ուսուցման, ագիտացիոն-մասսայական աշխատանքի, սոցիալիստական մրցության կազմակերպման, խնայողության ռեժիմի կիրառման վիճակը, անհրաժեշտության դեպքում ուսումնասիրության արդյունքները ներկայացնում կուսկոմիտեի քննարկմանը:

Այդ ամենի նպատակը սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացումն է, նրանց գործունեության արդյունավետության ապահովումը: Այսպես, խնայողության ռեժիմի կենսագործման նպատակով կուսկոմիտեն պլանավորեց ուսումնասիրել պարարտանյութերի, կոնկրետ դեպքում՝ կարբամիդի արտադրության մեջ ամոնիակի ծախսումների հնարավորության հարցը: Հանձնաժողովը ղեկավարում էր երիտասարդ կոմունիստ, ցիանուրաթթվի արտադրամասի տեխնիկական ղեկավար Գ. Ջոհրաբյանը: Ուսումնասիրություններից պարզվեց, որ իններորդ հնգամյակի առաջին երկու տարիներին կարբամիդի արտադրամասը ոչ միայն չի կատարել պետական առաջադրանքները, այլև հումքի՝ գլխավորապես ամոնիակի, զգալի կորուստ է տվել, նորմայից ավելի ծախսել նաև ջուրն ու ջերմային էներգիան: Հանձնաժողովը բացահայտեց խնայողության նոր հնարավորություններ: Այսպես, միայն ջերմափոխանակիչների ժամանակին մաքրման և ամոնիակի կորուստների լրիվ վերացման միջոցով հնարավոր է մեկ տոննա կարբամիդի ստացման համար, նախատեսված 620-ի փոխարեն, օգտագործել 595 կգ ամոնիակ:

Հանձնաժողովի ուսումնասիրության արդյունքները քննարկեցինք կուսկոմիտեի նիստում: Հանձնարարվեց կարբամիդի արտադրամասի սկզբնական կուսկազմակերպությանն ու կոմսոմբերին՝ խստորեն հետևել խնայողության ռեժիմի կիրառմանը. ամեն օր հաշվարկել ամոնիակի ծախսումները, մասսայականացնել ու տարածել հումքն ու օժանդակ նյութերը խնայողաբար օգտագործող հերթափոխությունների փորձը:

Կուսկոմիտեի որոշումը գործարար կերպով քննարկվեց կարբամիդի արտադրամասի սկզբնական կուսկազմակերպության ժողովում: Այս արտադրամասում էլ ծնունդ առավ «Երկարացնել ագրեգատների միջնորոգման վազքի ժամկետները» շարժումը: Քիմիագործները որոշեցին խնայված հումքի միջոցով փակել նախորդ տարիների պարտքը:

Արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացումը պայմանավորված է նաև նրանով, թե ովքե՞ր են ընտրվել կուսբյուրոների կազմում, ո՞վ է քարտուղարը, ինչպե՞ս է հասկանում կուսակցության առաջադրած այսօրվա պահանջները, կոլեկտիվի ղեկավարման սկզբունքը: Գրագետ, քաղաքականապես հասուն քարտուղարը կարողանում է գլխավորել ոչ միայն կոմունիստներին, այլև նրանց միջոցով՝ կոլեկտիվի անդամներին, նրանց ուժերն ու եռանդն ուղղելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործմանը, իններորդ հնգամյակի խնդիրների լուծմանը:

Հիմք ընդունելով այս պահանջները՝ կուսկոմիտեն արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների ընթացքում քարտուղարներ ու նրանց տեղակալներ է երաշխավորել գրագետ, աշխատանքային հարուստ փորձ ունեցող ու հեղինակություն վայելող կոմունիստների, որոնց 50 տոկոսը բանվորներ են, 98 տոկոսն ունի միջնակարգ, միջնակարգ-մասնագիտական և բարձրագույն կրթություն:

Արտադրության շահերից և սկզբնական կուսկազմակերպություններին ավելի արդյունավետ օգնություն ցույց տալու անհրաժեշտությունից ելնելով՝ երբեմն կուսկոմիտեի նիստերն անցկացնում ենք տեղամասում կամ արտադրամասում: Այս միջոցին դիմում ենք հատկապես այն ժամանակ, երբ հարկ է լինում հարցի քննարկմանը մասնակից դարձնել ավելի շատ մարդկանց:

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՄԻՋԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՐԸ ԱՐԴԻ ՇՐՋԱՆՈՒՄ

**Գ. Վ. ԴԱՎԹՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

Ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդիրներից մեկը ժողովրդի նյութական մակարդակի նշանակալի վերելքի ապահովումն է, որը մեծապես պայմանավորված է գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացմամբ: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIV համագումարն ընդգծեց կոլտնտեսային ու սովխոզային արտադրության բարձր տեմպերի ապահովման կարևորությունը: Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ինչպես միշտ, այժմ ևս առանձնահատուկ ուշադրություն են նվիրում գյուղատնտեսության ինտենսիվացման, մասնավորապես խոպանի արդյունավետ օգտագործման, հողերի ոռոգման և բազմաթիվ այլ հարցերի: Վերջին տարիներին գործնականորեն լուծվեցին կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու պրոբլեմները: Զգալի հաջողություններ ձեռք բերվեցին գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և մթերումներն ավելացնելու ասպարեզում: Մեծ է նաև արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի աշխատողների ավանդը: Գյուղատնտեսությունն արդյունաբերությունից լրացուցիչ ստացավ տրակտորներ, կոմբայններ, պահեստամասեր, ավելի քան մեկ միլիոն տոննա հանքային պարարտանյութ: Արդյունքը եղավ այն, որ երկրում իններորդ հնգամյակի վճռական տարում հասանք ռեկորդային ցուցանիշների: Հացահատիկի համախառն բերքը կազմեց 222,5 մլն տոննա, արտադրվեց 7,66 մլն տոննա բամբակի հումք, 86,8 մլն տոննա շաքարի ճակնդեղ (գործարանային), 107,7 մլն տոննա կարտոֆիլ և այլն: Կատարվեց անասնաբուծական մթերքների արտադրության ու պետական մթերումների ժողովրդատնտեսական պլանը:

Նյութատեխնիկական ամուր բազայի ստեղծման, արտադրության ինտենսիվացման մակարդակի բարձրացման շնորհիվ զգալիորեն ավելացել է կոլտնտեսությունների ինչպես համախառն արտադրանքը, այնպես էլ համախառն եկամուտը: Եթե առաջինի արժեքը 1960 թ. կազմում էր 27,8, ապա 1972 թ.՝ դարձավ 32,9 մլրդ ռուբլի: Նույն ժամանակամիջոցում կոլտնտեսությունների համախառն եկամուտը գրեթե կրկնապատկվեց. ավելացավ ոչ միայն բացարձակ թվերով, այլև 100 հեկտար վարելահողի հաշվով:

Գյուղի աշխատողների, բանվոր դասակարգի, սովետական ողջ ժողովրդի անձնվեր ջանքերի շնորհիվ կոլտնտեսությունները դարձել են մեքենայացված խոշոր ձեռնարկություններ, ավելացել է դրանց հանրային հարստությունը, բարձրացել կոլտնտեսականների կենսամակարդակը: Աստիճանաբար հաղթահարվում են քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունները: Կոլտնտեսությունների հզորացումը հատկապես նկատելի է վերջին 10—12 տարիներին: Այդ են վկայում ներքոհիշյալ տվյալները:

ՍՍՀՄ կոլտնտեսությունների մասշտաբները բնութագրող ցուցանիշները
(միջին հաշվով մեկ կոլտնտեսությանը ընկնում է)

| Ցուցանիշներ | Տարիներ | | | |
|---|---|---|---|---|
| | 1960 | 1965 | 1970 | 1972 |
| Կոլտնտեսային ընտանիք (ծուխ) | 391 | 426 | 435 | 443 |
| Գյուղատնտեսական օգտագործելի հողեր— հազար հեկտար | 6,6 | 6,1 | 6,1 | 6,2 |
| Վարելահող— հազար հեկտար | 3,0 | 3,1 | 3,2 | 3,2 |
| Հանրային ցանք— հազար հեկտար | 2,7 | 2,9 | 3,0 | 3,1 |
| Հանրային անասուն (տարվա վերջում) | | | | |
| խոշոր եղջերավոր անասուն (գլուխ) | 826 | 1056 | 1258 | 1388 |
| այդ թվում կովեր | 285 | 363 | 409 | 450 |
| ոչխար և այծ | 1654 | 1506 | 1633 | 1680 |
| խոզեր | 625 | 667 | 891 | 964 |
| Տրակտորներ— հատ | 14 | 21 | 29 | 32 |
| Անբաժանելի ֆոնդեր հիմնական ու շրջանառու միջոցներում— հազար ռուբ. | 705 | 1166 | 1815 | 2190 |
| Համախառն եկամուտ— հազար ռուբ. | 280 | 494 | 689 | 700 |

Աղյուսակից երևում է, որ 1972 թ. մեկ կոլտնտեսությանը ընկնող համախառն միջին եկամուտը, 1960 թ. համեմատությամբ, ավելացել է 2,5, իսկ անբաժանելի ֆոնդերը՝ ավելի քան 3 անգամ։

Նոր հասարակարգի կառուցման ընթացքում տեղի է ունենում սոցիալիստական սեփականության երկու ձևերի անընդհատ մերձեցման պրոցես։ Դա կատարվում է ոչ թե կոլտնտեսային կոոպերատիվ սեփականության սահմանափակման, այլ նրա հետագա զարգացման, հանրայնացման մակարդակի բարձրացման միջոցով։ ՍՄԿԿ ծրագրում ասված է. «Կոլտնտեսային ձևը լիովին համապատասխանում է գյուղի ժամանակակից արտադրուժերի մակարդակին ու դրանց զարգացման պահանջներին, թույլ է տալիս արդյունավետությամբ կիրառել նոր տեխնիկան ու գիտության նվաճումները, ռացիոնալ կերպով օգտագործել աշխատանքային ռեսուրսները» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 498)։

Արտադրության հանրայնացման մակարդակի բարձրացման, սոցիալիստական սեփականության երկու ձևերի աստիճանական մերձեցման ու միաձուլման պրոցեսում կարևոր նշանակություն ունեն միջտնտեսային արտադրակապերը, որոնց ի հայտ գալը կոլտնտեսային կարգի զարգացման նոր շրջափուլի արդյունք է՝ պայմանավորված անբաժանելի ֆոնդերի և արտադրուժերի աճով, ինչպես և միջկոլտնտեսային խնդիրների լուծմամբ։ Այդ միավորումները նշանավորվում են աշխատանքի և արտադրամիջոցների հանրայնացման նոր աստիճանով, որի նպատակն է առավել արդյունավետ օգտագործել անբաժանելի ֆոնդերը, աշխատուժն ու նյութական ռեսուրսները։ Սակայն, նմանատիպ տնտեսական կապերի զարգացման նշանակությունը միայն այն չէ, որ հաճախ առանձին տնտեսություններ հնարավորություն չեն ունենում ստեղծելու խոշոր ձեռնարկություններ, այլ այն, որ դրանց առավել լրիվ ու արդյունավետ օգտագործումը հնարավոր է իրականացնել մի խումբ կոլտնտեսությունների ուժերով։ Այդպիսի կոոպերացիան արժանի է հատուկ ուշադրության, որովհետև բացի արտադրականից ունի նաև սոցիալ-տնտեսական մեծ արժեք։

Մեծ թափ է ստացել միջկոլտնտեսային ձեռնարկությունների, կազմակերպությունների և միավորումների ստեղծումը։ Եթե 1962 թ. Սովետական Միությունում կային միջկոլտնտեսային մոտ 4.000 տարբեր ձեռնարկություններ ու միավորումներ, ապա 1972-ին դրանց թիվը հասավ 5.068-ի (ընդգրկվում էին



67.813 փայատեր կոլտնտեսություններ*), իսկ 1973 թ. վերջին՝ ավելի քան 5.400-ի։ Նման կոոպերացիաներ են ստեղծվել նաև Հայաստանում։ Առ մեկը հունվարի 1974 թ. 165 կոլտնտեսությունների և 18 սովխոզների մասնակցությամբ հանրապետությունում կազմակերպվել են միջտնտեսային 12 ձեռնարկություն, որոնցից չորսը ջերմատնային տնտեսություններ են, 3-ը՝ թռչնաբուծական ֆաբրիկաներ և ֆերմաներ, 2-ը՝ շինկազմակերպություններ։ Մասնագիտացված խոշոր ձեռնարկություններն ու միավորումները նպաստում են գյուղատնտեսության ինտենսիվացմանը, արտադրության մեջ գիտատեխնիկական առաջադիմության նորագույն նվաճումների, կառավարման ժամանակակից մեթոդների և աշխատանքի գիտական կազմակերպման ներդրմանը։ Կարևոր է և այն, որ կոոպերացիաները կազմակերպվում են գլխավորապես կոլտնտեսությունների ու սովխոզների սեփական միջոցների հաշվին և չեն պահանջում լրացուցիչ պետական ներդրումներ։ Միության մեջ առանձնապես լայն տարածում է ստացել շինարարական, շինանյութերի, կերի արտադրության գործարանների, գյուղատնտեսական մթերքների վերամշակման ձեռնարկությունների, անասունների գիրացման օբյեկտների, թռչնաբուծական ֆաբրիկաների և ֆերմաների, անասունների արհեստական սերմնավորման կայանների, գյուղատնտեսական տեխնիկայի նորոգման արհեստանոցների և միջկոլտնտեսային այլ ձեռնարկությունների ու կազմակերպությունների ստեղծումը։ Գյուղում արտադրական կոոպերացիայի առավել տարածված ձևը շինկազմակերպություններն են, որոնց ցանցի ընդլայնումը պայմանավորվում է կապիտալ շինարարության անշեղ աճով։ Այժմ ամենուրեք զգացվում է շինարարության ինդուստրիալ մեթոդների անցման անհրաժեշտությունը, որը հնարավոր է իրականացնել միայն մասնագիտացված, շինարարական ժամանակակից տեխնիկայով զինված կազմակերպությունների միջոցով, նյութական ու ֆինանսական ռեսուրսների հետագա կենտրոնացման ուղիով։ 1972 թ. երկրում կային շինմոնտաժային 3,2 հազար կազմակերպություններ, որոնցում փայատեր են 28,3 հազար կոլտնտեսություն (ընդհանուր քանակի 89 տոկոսը) և 1,9 հազար սովխոզ։ Դրանք ունեն ժամանակակից մեքենաների ու մեխանիզմների հզոր պարկ, մեծ քանակությամբ գործարաններ ու արտադրամասեր, ուր արտադրվում են երկաթբետոնե կոնստրուկցիաներ և շինանյութեր։ Շինկազմակերպություններում ու միավորումներում կան նախագծային ինստիտուտներ, որոնք ժամանակին են կատարում ներկայացվող պահանջները։ Դրական աշխատանքի մեծ փորձ է կուտակվել Մոլդավական ՍՍՀ-ում։ Այնտեղ 1959 թ. կազմակերպվել է «Միջկոլտնտշին» հանրապետական միավորումը, որը կարճ ժամանակամիջոցում ստեղծել է շինարարական հզոր բազա։ Այժմ միավորման կազմում ընդգրկված են տնտհաշվարկային 76 ձեռնարկություն և արտադրակոմբինատ, այդ թվում՝ երկաթբետոնե իրերի արտադրության գործարաններ, փայտամշակման կոմբինատներ, շինանյութերի արտադրության ձեռնարկություններ և այլն։ Նախագծային կենտրոնը վերածվել է միավորմանը կից «Միջկոլտնտշին» նախագծային ինստիտուտի, որտեղ աշխատում են ավելի քան 700 բարձրորակ մասնագետներ։

Ցավոք, միջկոլտնտեսային շինարարական կազմակերպությունները մեր հանրապետությունում լայն գործունեություն չեն ծավալել, թեև առանձին օղակներում հասել են որոշակի հաջողությունների։ Շահումյանի շրջանի միջկոլտնտեսային շինվարչությունը վերջին երեք տարում, միջին հաշվով, տարեկան կատարել է 1,3 միլիոն ռուբլու շինարարական աշխատանք։ Սակայն մի շարք շրջանների ղեկավարների անուշադրության հետևանքով այդ կազմակերպությունների զգալի մասը ինքնալուծարքի ենթարկվեց։ Այժմ գործում են միայն երկուսը՝ Ախուրյանի և Երևանի Շահումյանի շրջաններում, այն դեպքում, երբ տարեցտարի կոլտնտեսությունների կապիտալ շինարարության ծավալը մեծանում է։

* Շատ կոլտնտեսություններ միաժամանակ փայատեր են երկու և ավելի միջկոլտնտեսային միավորումներում (ձեռնարկություններում)։

կհասցվի 4.000-ի, իսկ մսի արտադրությունը 5.200 ցենտների, այսինքն՝ 1970 թ. համեմատությամբ, խոզերի գլխաքանակը կաճի 200 տոկոսով, իսկ մսի արտադրությունը՝ 4 անգամ։

Չնայած միջտնտեսային ձեռնարկությունների ակնհայտ առավելությանը, դրանց կազմակերպումը դանդաղ է ընթանում։ Թեև հանրապետությունն ունի լայն հնարավորություններ և նպաստավոր պայմաններ, մինչև օրս չկան խոշոր եղջերավոր անասունների աճեցման և բտման միջտնտեսային ձեռնարկություններ, որոնցում արտադրության մասնագիտացման ու կենտրոնացման, աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման շնորհիվ հնարավոր կլիներ արտադրանքի միավորի հաշվով, աշխատանքային ու նյութական միջոցների նվազագույն ծախսումներով թողարկել առավելագույն քանակությամբ արտադրանք։ Միջտնտեսային անասնաբուծական ձեռնարկությունների կազմակերպման անհրաժեշտությունն իր արտացոլումն է ստացել ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1973 թ.) պլենումի որոշումներում։ Խամ ու խոպան հողերի յուրացման 20-ամյակի կապակցությամբ Ալմա-Աթայում արտասանած ճառում Լ. Ի. Բրեժնևը մասնավորապես ասաց. «Արտադրության բազմաճյուղ, մասնատված կառուցվածքի մինչև օրս պահպանված գծերը, որոնք ժառանգություն են մնացել անցյալից, կասեցնում են գիտատեխնիկական վերազինման պրոցեսը, արգելակում գյուղատնտեսության ինտենսիվացումը, ուստի, արտադրության հետագա մասնագիտացումը և կենտրոնացումը, միջտնտեսական կոոպերացիայի խորացումը ներկայումս երկրի գյուղատնտեսության զարգացման կենսական, արմատական հարցերն են դառնում»։

Միջկոլտնտեսային կապերի զարգացման, տարբեր տեսակի արտադրական ձեռնարկությունների (շինարարական, շինանյութերի արտադրության, թռչնաբուծական ֆաբրիկաների, անասունների բտման օբյեկտների և այլն) կազմակերպման ու ընդլայնման, դրանց օգնության և ղեկավարության գործում նախկինում թույլ տված սխալները չկրկնելու համար, մեր կարծիքով, անհրաժեշտ է հանրապետությունում հիմնել մի կենտրոն (գերատեսչություն)։ Այն կկոորդինացնի աշխատանքը, կօգնի արտադրության պլանավորմանը, շինմեխանիզմներով, փոխադրամիջոցներով, շինանյութերով մատակարարմանը, սեփական նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։ Նկատենք, որ ՍՍՀՄ-ում կան մարզային, երկրամասային և հանրապետական 245 միավորումներ, 106 վարչություններ ու տրեստներ, որոնք ղեկավարում են միջկոլտնտեսային կազմակերպությունների գործունեությունը։ Միակ հանրապետությունը, որ չունի նման կենտրոն՝ Հայկական ՍՍՀ-ն է։ Միջկոլտնտեսային արտադրակապերի զարգացումը նոր պայմաններ է ստեղծում կոլտնտեսային, կոոպերատիվ սեփականության հանրայնացման մակարդակի հետագա բարձրացման համար. կոլտնտեսային սեփականությունն աստիճանաբար կորցնում է իր կոլեկտիվ (խմբային) բնույթը, ձեռք է բերում համաժողովրդական սեփականության գծեր։ Միջկոլտնտեսային արտադրամիավորումներում աշխատանքի կազմակերպումը, պլանավորումը, նորմավորումն ու վարձատրությունը կատարվում է մոտավորապես այնպես, ինչպես պետական ձեռնարկություններում։

Միջկոլտնտեսային կապերի ընդլայնումը մեծապես նպաստում է արտադրաուժերի զարգացմանը, կոլտնտեսային սեփականության հանրայնացման մակարդակի բարձրացմանը, պայմաններ է ստեղծում մեծացնելու կապիտալ ներդրումների արդյունավետությունը, մեղմացնելու աշխատուժի օգտագործման սեզոնայնությունը, հավասարաչափ օգտագործելու արտադրառեսուրսները, հետևապես, ապահովելու գյուղական բնակչության նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ վերելքը։

# ԱՇԽԱՏԱՎԱՐՁԻ ՍԻՍՏԵՄԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՆՈՐ ՓՈՒԼԸ

Գ. Ն. ՍԱՀԱԿՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

Կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներում բազմակողմանի մշակված են այն հիմնական դրույթները, որոնց անշեղ իրագործմամբ կկատարելագործվեն զարգացած սոցիալիստական հասարակարգի բաշխման հարաբերությունները։ Նշվում է, որ ընթացիկ հնգամյակում բնակչության ռեալ եկամուտների գլխավոր աղբյուրը պետք է հանդիսանա ըստ աշխատանքի վարձատրությունը՝ բանվորների և ծառայողների աշխատավարձն ու կոլտնտեսականների եկամուտները (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 261)։

Համագումարի այդ առաջադրանքն աստիճանաբար կատարվում է։ Հնգամյակի առաջին երկու տարում աշխատավորների իրական եկամուտներն արդեն ավելացել են 8,4 տոկոսով։ Դիրեկտիվներում հատկապես ընդգծվում է աշխատավարձի կազմակերպման կատարելագործման անհրաժեշտությունը։ Այսպես, առաջադրվում է «Ավելացնել աշխատավարձի նվազագույն չափերը, միջին վարձատրության աշխատավարձի դրույքներն ու ռոճիկները։ Բարձրացնել աշխատավարձի հավելումները երկրի արևելյան և հյուսիսային շրջաններում» (նույն տեղը)։ Արդեն 1972 թ. վերջերից համապատասխան միջոցառումներ ձեռնարկվեցին աշխատանքի վարձատրության նոր պայմաններին անցնելու համար։ Դա բացատրվում է նրանով, որ բանվորների միջին աշխատավարձում տարիֆային դրույքների տեսակարար կշիռը նվազման տենդենց ունի։ Իջել են նաև աշխատանքի նորմավորման ցուցանիշները. փորձավիճակագրական նորմաների գերակատարման հետևանքով գործավարձով աշխատողների աշխատավարձը բարձրանում է, բայց համապատասխանաբար չի աճում աշխատանքի արտադրողականությունը, որովհետև արդյունաբերության ճյուղերի գերակշռող մասում աշխատանքի նորմավորումն օգտագործվում է աշխատավարձի տվյալ մակարդակը պահպանելու համար։

Ինչո՞ւ են վատացել աշխատավարձի կազմակերպման այդ հիմնական տարրերի որակական ցուցանիշները։ Թեև վարձատրության կարգավորումից հետո (1956—1965 թթ.) տարիներ են անցել և այդ ժամանակաշրջանում կարևոր փոփոխություններ են տեղի ունեցել արտադրության պրոցեսներում՝ կատարելագործվել է արտադրության ու աշխատանքի կազմակերպումը, տեխնիկական առաջադիմության հիման վրա համապատասխանաբար բարձրացել է արտադրության աշխատողների որակավորումը, սակայն դրանք իրենց արտացոլումը չեն գտել գոյություն ունեցող տարիֆային համակարգում։ Այդ պատճառով հարկ եղավ վերանայել այդ սիստեմը՝ հարմարեցնելով արտադրության մեջ կատարված փոփոխություններին։ Արտադրության բոլոր ճյուղերի համար սահմանվում են միասնական տարիֆա-որակավորման նոր տեղեկատու և վեց միասնական տարակարգային ցանց, որտեղ դրույքների թիվը կրճատվում է՝ չորս հարյուրից մինչև յոթանասուն։ Այս նշանակում է, որ տարիֆային սիստեմը զգալի կատարելագործվում է. առաջին անգամ աշխատավարձի կազմակերպման մեջ արտադրության բոլոր ճյուղերում սահմանվում են միասնական

տարիֆային փաստաթղթեր, որոնցով և առավել հետևողական է իրագործվում հավասար աշխատանքի համար հավասար վարձատրության սկզբունքը։

Վարձատրության նոր պայմաններից օգտվում են ավելի քան 50 մլն աշխատողներ, որոնց եկամուտների աճը կկազմի 9 մլրդ ռուբլի։ 1973 թ. նոր սիստեմին են անցել Հեռավոր Արևելքի, Սիբիրի և Ուրալի շրջանները, իսկ մյուս տնտեսական շրջանները կանցնեն հնգամյակի վերջին երկու տարիների ընթացքում։ Եվ դրանք իրագործվելու են ոչ թե ճյուղային, այլ տերիտորիալ սկզբունքներով։

Քանի որ ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի պահանջների իրագործման գլխավոր լծակը տարիֆային սիստեմն է, ապա նոր պայմաններում առաջին հերթին դրվում է դրա կատարելագործման հարցը։ Այսպես, տարիֆային դրույքները արդյունաբերության ճյուղերում կբարձրանան 28, գյուղատնտեսության պետական ձեռնարկություններում՝ 30 տոկոսով։

Նորմաների վերանայման հիման վրա արդյունաբերող բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը կբարձրանա 11, գյուղատնտեսական պետական ձեռնարկություններում՝ 14, իսկ կապի և տրանսպորտի ձեռնարկություններում՝ 17 տոկոսով։

Ինչպես միշտ, այս անգամ ևս պահպանվելու է շերտավորման սկզբունքը։ Բարձրացվելու է առաջատար ճյուղերի աշխատողների վարձատրությունը, հատկապես, ծանր ինդուստրիայի՝ քարածխի, գունավոր մետալուրգիայի, նավթի և գազի արդյունաբերության, մեքենաշինության և այլ ճյուղերում։

Սակայն, զարգացած սոցիալիզմի առավելությունն այն է, որ առաջատար ճյուղերի աշխատողների նյութական խրախուսումը զուգակցվում է «Բ» խմբի ճյուղերի աշխատողների նյութական շահագրգռվածության հետ։ Այսպես, վարձատրության նոր պայմաններով աշխատավարձի բարձր աճ է նախատեսվում նաև սննդի և թեթև արդյունաբերությունում ու սովխոզներում։ Պատճառը հետևյալն է՝ առաջին, որ այս ճյուղերում աշխատավարձի մակարդակը դեռևս ցածր է «Ա» խմբի համեմատությամբ, երկրորդ՝ դրանք կարևոր դեր են խաղում ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդրի՝ ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի զգալի բարձրացման գործում։

Աշխատավարձի կարգավորման կարևոր պայմաններից է և տարբեր ճյուղերում աշխատողների վարձատրության մակարդակի միջև օպտիմալ հարաբերության պահպանումը՝ դրանց համահարթման և մերձեցման միջոցով։

Կոմունիստական շինարարության արդի փուլում աշխատանքի վարձատրության տարբեր մակարդակների տնտեսապես հիմնավորված օպտիմալ հարաբերակցությունների սահմանումը և պահպանումն աշխատավարձի կազմակերպման կատարելագործման կարևոր ուղղություններից մեկն է։ Այդ բխում է զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում բաշխման հարաբերություններին առաջադրվող կարևոր պահանջներից՝ բնակչության եկամուտների մակարդակների տնտեսապես հիմնավորված միատարրություն ստեղծելու սկզբունքից։ Զարգացած սոցիալիզմի փուլում բանվորների և ծառայողների որակավորման պրոցեսն արագ է ընթանում։ Այսօր արտադրության ճյուղերում վճռական դեր են խաղում բարձր որակավորում ունեցող բանվորները։ Զգալի չափերով՝ 30—40 տոկոսով, կավելանա որակավորված բանվորների, վարպետների, տեխնիկների, ինժեներների, ագրոնոմների և մյուս մասնագետների աշխատավարձը։

Առավել բարձր տարիֆային դրույքներ են նախատեսվում այն բանվորների և վարպետների համար, որոնք անմիջապես սպասարկում են ժամանակակից բարձր արտադրողականության ագրեգատներ, մեքենաներ և մեխանիզմներ։ Ինժեներա-տեխնիկական աշխատողների վարձատրության բնագավառում առաջնությունը տրվելու է կոնստրուկտորներին. նրանց միջին աշխատավարձը կբարձրանա 25—35 տոկոսով։ Իսկ նույն կատեգորիայի մյուս աշխատողների վարձատրությունը՝ 18 տոկոսով։

Աշխատավարձի կազմակերպման կատարելագործման կարևոր ուղղություններից է աշխատանքի պայմանների լրիվ և ճշգրիտ հաշվառումը։ Սա աշ-



խատանքի տարիֆավորման տարրերից մեկն է և համարվում է աշխատանքի որակը բնութագրող ցուցանիշ, այդ պատճառով աշխատանքի վարձատրման նախատեսվող միջոցառումներում հատուկ ուշադրություն է դարձվում այդ գործոնի հաշվառմանը։ Աշխատավարձի մակարդակը բարձր է լինելու և արդյունաբերության այն ճյուղերում, ուր բանվորներն ու ծառայողները աշխատում են ծանր, վնասակար և առավել վնասակար պայմաններում։

Գիշերային աշխատողների վարձատրությունը ևս որոշ չափով պետք է բարձրանա։ Այսպես, եթե գոյություն ունեցող վարձատրության պայմաններով գիշերային աշխատանքի համար կատարվող վերավճարումը կազմում է մեկ ժամային տարիֆային դրույքի 14,3 տոկոսը, ապա նորի դեպքում այն կկազմի 50 տոկոս։ Դա արդեն իրագործվել է թեթև և սննդի արդյունաբերության ճյուղերում։ Այս միջոցառումը բարձրացնում է ոչ միայն աշխատավարձի մակարդակը, այլև սահմանափակում կամ մեղմացնում գիշերային աշխատողների հոսունությունը։

Վարձատրության նոր պայմանների շնորհիվ, ամենից առաջ, կվերացվեն աշխատավարձի կազմակերպման բնագավառում տեղ գտած թերությունները։ Հետևաբար, անհրաժեշտ է բարձրացնել տարիֆային դրույքների տեսակարար կշիռը բանվորների միջին աշխատավարձում՝ աշխատանքի նորմավորման և պարգևատրումների համակարգի կատարելագործմամբ։

Այնուհետև աշխատավարձի կազմակերպման սիստեմը պետք է խթանի արտադրության զարգացմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, նպաստի պետական պլանային առաջադրանքների կատարմանը։ Վարձատրության նոր պայմաններով հնարավորություն է ընձեռվում ձեռնարկություններին՝ ավելորդ աշխատուժի կրճատման և արտադրողականության բարձրացման հաշվին ավելացնել արտադրանքի քանակը, բարելավել որակը, որով և կբարձրանա բանվորների և ծառայողների աշխատավարձը։

Զարգացած սոցիալիստական հասարակարգում հրատապ նշանակություն են ստանում նոր արտադրանքի յուրացումը և որակական հատկանիշների բարձրացումը, որոնք զգալի չափով կախված են վարձատրության սիստեմից։ Մեր կարծիքով վարձատրության նոր պայմաններով արտոնություն պետք է տրվի այն ձեռնարկություններին, որոնք բարձրացնում են նոր արտադրանքի տեսակարար կշիռը և ապահովում են դրա ատեստավորումը, իսկ հավասար կարողություններ և աշխատանքային պայմաններ ունեցող ձեռնարկություններից նրանց, որտեղ ապահովվում է աշխատանքի արտադրողականության բարձր մակարդակը։ Քանի որ աշխատանքի արտադրողականության աճի վճռական գործոնը տեխնիկական առաջադիմությունն է, ուստի ըստ վարձատրության նոր պայմանների, պետք է բարձրացնել այն ձեռնարկությունների կատեգորիաները, որոնք կոմպլեքսային մեքենայացմամբ, արտադրության պրոցեսների ավտոմատացմամբ և հիմնական ֆոնդերի ռացիոնալ օգտագործմամբ ապահովում են արտադրության արդյունավետության վերելքը։

Աշխատավարձի կազմակերպման կատարելագործման հանգուցային պրոբլեմներից է աշխատավարձի ֆոնդի ճիշտ օգտագործումը։ Տնտեսական ռեֆորմի հետևանքով վերադասի կողմից իջեցվող պլանային ցուցանիշները զգալի կրճատվեցին, բայց աշխատավարձի ֆոնդը որպես պլանային առաջադրանք մնաց նույնը։ Աշխատանքի վարձատրության նոր պայմաններում հաշվի է առնված տնտեսական ռեֆորմի շնորհիվ ձեռք բերած դրական փորձը։ Այսպես, ձեռնարկությունների ղեկավարներին իրավունք է վերապահվում արհմիութենական կազմակերպությունների համաձայնությամբ աշխատավարձի ֆոնդից օգտագործել տարիֆային դրույքների 30 տոկոսը, ըստ որում լրացուցիչ վարձատրել այն բանվորներին, որոնք համատեղում են հարակից մասնագիտությունները, ընդարձակում են իրենց գործունեության բնագավառը, ավելացնում կատարվող աշխատանքի ծավալը։ Պետք է նշել, որ Միության արդյունաբերության առաջավոր ձեռնարկություններում արդեն հաջողությամբ են օգտըվում այդ միջոցառումից։

Աշխատավարձի ֆոնդի ռացիոնալ օգտագործման մեթոդներից մեկն էլ

այն է, երբ նորարարական առաջարկների շնորհիվ տնտեսվում է աշխատավարձի ֆոնդը, ձեռնարկությունը հնարավորություն է ստանում միանվագ հավելյալ վարձատրել այդ առաջարկների հեղինակներին։

Աշխատավարձի կազմակերպման տարրերից են և պարգևատրումները, որոնց դերը շատ կարևոր է վարձատրության կազմակերպման կատարելագործման գործում։ Սակայն պրակտիկան ցույց է տալիս, որ այս բնագավառում գոյություն ունեն որոշակի թերություններ, որոնց վերացման համար աշխատավարձի կատարելագործման ներկա փուլում ստեղծվել են նպաստավոր պայմաններ։ Դրանք են՝ տարիֆային դրույքների տեսակարար կշռի բարձրացումը բանվորների միջին աշխատավարձում, նորմավորման որոշակի կարգավորումը, աշխատավարձի ֆոնդի ռացիոնալ օգտագործումը և այլն։ Սակայն որոշ ձեռնարկություններում պարգևատրումները ճիշտ չեն օգտագործվում. դրանք դիտվում են որպես լրացուցիչ վարձատրություն։ Մինչդեռ պարգևատրումները հիմնական աշխատավարձի հետ կարևոր դեր են խաղում արտադրության և սպառման միջև օպտիմալ փոխադդեցություն ապահովելու գործում։

Արտադրության և բաշխման հարաբերությունների օպտիմալացումը հենց այն է, որ աշխատավորների կենսամակարդակի յուրաքանչյուր բարելավումը պետք է պայմանավորվի աշխատանքի արտադրողականության աճով, այլապես անկարելի է իրագործել սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի պահանջը՝ ժողովրդի հարաճուն պահանջմունքների ըստ ամենայնի բարելավումը։

Աշխատանքի վարձատրության նոր պայմաններին անցումը կատարվում է ինչպես վերադաս մարմինների, այնպես էլ տեղական կազմակերպությունների օգնությամբ։ Դրանց անշեղ իրագործումը ոչ միայն նպաստում է բաշխման հարաբերությունների հետագա կատարելագործմանը, այլև օժանդակում աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացմանը՝ իններորդ հնգամյակի պլանները կատարելու և գերակատարելու գործում։

Մեր հանրապետության կուսակցական, պետական և տնտեսական օրգաններն աշխատանքի վարձատրության նոր պայմաններն անթերի կիրառելու գործում մեծ անելիքներ ունեն։

ՀՍՍՀ արդյունաբերության մի քանի ճյուղերում (գունավոր մետալուրգիայի, էներգետիկայի, քիմիական և սննդի) բանվորների միջին աշխատավարձում տարիֆային դրույքների տեսակարար կշռի նվազման տենդենց է նկատվում, որի գլխավոր պատճառը պարգևատրումների հարաբերականորեն բարձր տեսակարար կշիռն է։ Իսկ այլ ճյուղերում (մեքենաշինության, շինանյութերի, անտառային-փայտամշակման) տարիֆային դրույքների տեսակարար կշիռը բարձր է, որի պատճառը պարգևատրումների դերի թերագնահատումն է, հատկապես, գործավարձով աշխատող բանվորներինը. Նրանց կամ չեն պարգևատրում, կամ պարգևատրում են աննշան չափով։ Սա էլ իր հերթին բացատրվում է նրանով, որ նշված ճյուղերում փորձնա-վիճակագրական նորմաների տեսակարար կշիռը դեռևս բարձր է։ Հետևաբար, նորմաներն այնտեղ գերակատարվում են բարձր տոկոսներով, և ապահովվում է աշխատավարձի տվյալ մակարդակը, բայց չեն կատարվում աշխատանքի արտադրողականության աճի պլանները։ Հանրապետության արդյունաբերության ճյուղերում դեռևս խսպառ չեն վերացված բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների վարձատրության հարաբերություններում հավասարության մնացորդները։

Աշխատավարձի կազմակերպման կատարելագործման համակարգում առանձնահատուկ նշանակություն ունեն վարձատրության ձևերն ու սիստեմները։ Ինչպես հայտնի է, ՍՍՀՄ-ում արտադրության ճյուղերում և ոչ արտադրական ոլորտներում կիրառվում են աշխատավարձի երկու հիմնական ձև՝ գործավարձ ու ժամավարձ և հարակից մի քանի սիստեմներ՝ գործավարձային և ժամանակավարձային պարգևատրումներ, պրոգրեսիվ գործավարձային, ակորդային վարձատրության և այլն։

Սոցիալիստական շինարարության պրակտիկան հաստատել է, որ վարձատրության այդ սիստեմներից առավել արդյունավետներն են՝ ժամավարձային



և գործավարձային պարգևատրումները։ Աշխատավարձի կարգավորմամբ դրանք զգալիորեն տարածվեցին ՍՍՀՄ և ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության ճյուղերում։ Սակայն մեր հանրապետության տվյալները ցույց են տալիս, որ վարձատրության այդ սիստեմներն անհամաչափ են տարածվել։

Այսպես, 1972 թ. տվյալներով հանրապետության արդյունաբերության ճյուղերում այդ սիստեմի տարածումը հետևյալ պատկերն է ունեցել.

(տոկոսներով)[1]

| | Գուն. մետալ. | Քիմ. | Մեքենաշին. | Անտառ. | Շինան. | Թեթև | Սննդի |
|---|---|---|---|---|---|---|---|
| Գործավարձային պարգևատրումներ | 53,5 | 60,5 | 12,8 | 1,9 | 24,3 | 72,6 | 60,6 |
| Ժամավարձային պարգևատրումներ | 38,1 | 59,1 | 32,2 | 17,5 | 13,9 | 19,9 | 35,6 |

Ինչպես երևում է աղյուսակի տվյալներից, հանրապետության արդյունաբերության մի քանի ճյուղերում դանդաղ է տարածվում վարձատրության նշված արդյունավետ սիստեմը։

Վարձատրության նոր պայմաններին անցնելը պետք է խթանի արդյունաբերության և արտադրության մյուս ճյուղերում առավել արդյունավետ վարձատրության ձևերի և սիստեմների տարածմանը։

Մեր հանրապետության համապատասխան մարմինները պետք է միջոցառումներ ձեռնարկեն աշխատավարձի կազմակերպման բնագավառում եղած թերությունները վերացնելու համար։

Բաշխման հարաբերությունների կատարելագործումը ընթացիկ հնգամյակում տեղի է ունենում ոչ միայն աշխատավարձի կազմակերպման, այլև կոլտնտեսականների վարձատրության և սպառման հասարակական ֆոնդերի օգտագործման բնագավառներում։

Բաշխման հարաբերություններում առավել հստակությամբ է դրսևորվում արտադրահարաբերությունների սիստեմատիկ կատարելագործման անհրաժեշտությունը, որը զարգացած սոցիալիստական հասարակարգի վերընթացի կարևոր օրինաչափություններից մեկն է։

[1] Աղյուսակը կազմվել է ՀՍՍՀ կենտվիճվարչության տվյալներով։

*տիչ, անկախ պրոֆեսիոնալ մակարդակից, այն*
*թողնելով մեծ երգիչներին։ Եվ երբ կզարդարի*
*մարդկանց կյանքը, կնվազեցնի արատավոր ա-*
*րարքները, այն ժամանակ կերգեն բոլորը…*

## ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

Զրույցը շոշափում է երգարվեստին և ընդհանրապես երաժշտական
դաստիարակությանն առնչվող մի շարք հրատապ, հուզիչ հարցեր, որոնք
արժանի են իրական խրախուսման։
Մենք հատկապես զգում ենք մասսայական երգերի, միավորող ու համա-
խմբող երգարվեստի պակասը։ Այստեղ, տաղանդից ու պրոֆեսիոնալիզմից
զատ, կոմպոզիտորներից և կատարողներից պահանջվում է դրա հասարակա-
կան դերի խոր ըմբռնում։ Հայաստանի կոմպոզիտորների միության խնդիրն է
մրցույթների, մրցանակաբաշխությունների, փառատոների միջոցով խրախու-
սել այս ժանրի զարգացումը։
1970 թ. հունիսի 26-ին Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի սեսիան որո-
շում ընդունեց «Հանրապետությունում երիտասարդության էսթետիկական
դաստիարակության վիճակի և այն բարելավելու միջոցառումների մասին»։
Անցած շրջանում հանրակրթական դպրոցներում բարելավվել է երաժշտու-
թյան ուսուցման որակը, զգալիորեն ավելացել է գեղարվեստական ինքնա-
գործունեության խմբակների, դրանցում ընդգրկված աշակերտների թիվը։
Վերջին երեք տարում մեր մանկավարժական բուհերում երգ-երաժշտության
բաժինն են ընդունվել 3,3 անգամ ավելի ուսանողներ։ Սակայն դեռևս այդ
գործում կան լուրջ թերություններ։ Հանրապետության 812 միջնակարգ դպ-
րոցներից միայն 125-ում է ավանդվում «Էթիկայի և էսթետիկայի հիմունքներ»
առարկան, որոնց զգալի մասում այն ձևական բնույթ է կրում։ ՀՍՍՀ լուսա-
վորության մինիստրությունը պետք է առավել մտահոգվի երաժիշտ-մանկա-
վարժների պատրաստման, ուսումնական ծրագրեր, մեթոդական ձեռնարկներ
ու դասագրքեր կազմելու խնդիրներով։
Խիստ անբավարար է երգ-երաժշտության ուսուցումը, հատկապես, գյու-
ղական վայրերում։ Անիի, Արթիկի, Գորիսի, Նոյեմբերյանի, Հրազդանի և Սե-
վանի շրջանների 155 դպրոցներում աշխատում են նկարչության ու երգ-երա-
ժշտության միայն 20 մասնագետներ, 1973—74 ուսումնական տարվա շրջա-
նավարտներից այդ դպրոցները գործուղված 26 հոգուց աշխատում են 13-ը։
Մինչդեռ կուսշրջկոմները և շրջգործկոմները պարտավոր են ամենայն լրր-
ջությամբ վերաբերվելու ՀՍՍՀ Գերագույն սովետի որոշման կենսագործմանը։
Խ. Աբովյանի անվան հայկական մանկավարժական ինստիտուտը, պե-
տական կոնսերվատորիան, երաժշտական մանկավարժական ուսումնարան-
ները, ուսուցիչների կատարելագործման հանրապետական և քաղաքային
ինստիտուտները պիտի ջանան բարելավելու կադրերի պատրաստման գոր-
ծը, վերացնել թերությունները, ստեղծել երիտասարդ մասնագետների կրթու-
թյան և աշխատանքի բարենպաստ պայմաններ։ Դպրոցների ղեկավարները,
իրենց հերթին, պետք է ամեն կերպ օգնեն երաժշտության ուսուցման բարե-
լավմանը, ձեռք բերեն անհրաժեշտ գործիքներ ու պիտույքներ, հատուկ հո-
գատարություն դրսևորեն երաժշտություն սովորողների նկատմամբ։ Ցավալի
է, որ I—III դասարաններում երգ-երաժշտությունը դեռևս վարում են ոչ թե
մասնագետները, այլ դասվարները։
Լուրջ փոփոխությունների կարիք ունի գործող ծրագիր-երգացանկը, ուր
կան երգեր, որոնք մանկական ձայնի համար չեն, դրանց մեծ մասը հնացել
է։ Հայաստանի կոմպոզիտորների միությունը գրեթե աչքաթող է արել մանուկ-
ներին, մոռանալով, որ երաժշտական գիտելիքների մինիմումն անհրաժեշտ
է ապահովել փոքրուց։
Զնայած զրույցի ժամանակ եղած տարակարծություններին, մենք ևս
համամիտ ենք, որ պետք է հրավիրել գրողների ու կոմպոզիտորների համա-
տեղ խորհրդակցություն։ Նման միջոցառումը բխում է ՍՄԿԿ Կենտկոմի «Գրա-
կան-գեղարվեստական քննադատության մասին» որոշման ոգուց. «Ստեղծա-
գործական միությունները պետք է նախաձեռնեն ու կազմակերպեն գեղար-



վեստական ստեղծագործության հրատապ հարցերի, գրականության և ար-
վեստի առանձին ստեղծագործությունների քննարկումներ, իրենց ավանդը
ներդնեն սոցիալիստական ռեալիզմի տեսական պրոբլեմների մշակման գոր-
ծում»։
Հաճախ անխնամ ու անճաշակ է կազմակերպվում երաժշտության պրո-
պագանդան։ Ռադիոյի և հեռուստատեսության պետական կոմիտեն պետք է
լրջորեն վերահսկի, որպեսզի հաղորդումները կազմվեն խիստ ընտրությամբ,
համակողմանի նախապատրաստությամբ։ Մինչդեռ կապույտ էկրանը երբեմն
տրամադրվում է կատարողական ցածր մակարդակ ունեցող խմբերի և ան-
հատների։ Մասնավորապես ուզում ենք նշել «Հարսանեկան էթնոգրաֆիա-
կան պարեր» հաղորդումը։ Նման ցուցադրումները պետք է ունենան գիտա-
կան հավաստիություն և ներկայացվեն պատշաճ մշակմամբ, զերծ պրիմիտի-
վությունից, պայմանավորված հեռացույցի հնարավորություններով։ Անճաշա-
կության, կենցաղային գռեհկության «հարազատ» ցուցադրմամբ հաղորդումը
վերածվում է «թամաշայի»…
Երգարվեստի պրոպագանդումը դեռևս թույլ է մեր մամուլում։ Բավա-
կանին պասիվ է նաև «Հայաստան» հրատարակչությունը։ Վերջինս պար-
տավոր է այնպես կազմակերպել գործը, որ նոր երգը հնարավորին չափ շուտ
հասնի երաժշտասերներին։
ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրության ցանցում այժմ գործում են 1.067
ակումբային հաստատություններ, 198 հազար տեղանոց 992 դահլիճներով։
Դրանցում կա 1.798 ինքնագործ խմբակ՝ 26 հազար մասնակիցներով։ Այս-
պիսով, բոլոր պայմաններն առկա են ինքնագործունեության զարգացման
համար, սակայն դեռևս վատ ենք օգտագործում դահլիճները։ Ճիշտ է, Հայաս-
տանի երգչախմբային ընկերությունն զգալի գործ է արել խմբերգային ար-
վեստի տարածման, երգը դահլիճից դուրս բերելու մարզում, բայց և չենք
կարող ասել, թե ամեն ինչ արված է։ Մասնավորապես երգչախմբերը քիչ են
արդյունաբերական ձեռնարկություններում. ժամանակն է՝ խելացի օգտվել
դրանց նպաստավոր հանգամանքներից։
Երաժշտական, ընդհանրապես գեղագիտական դաստիարակությունն
առանձին անհատների ու կոլեկտիվների էնտուզիազմի արտահայտությունը
չէ միայն. այն յուրաքանչյուրիս հասարակական-քաղաքական պարտքն է։
Անհրաժեշտ է պետականորեն լուծել երգի տոների խնդիրը, սահմանել որո-
շակի ժամկետներ։ Ուզում ենք հավատալ, որ կգա օրը, երբ հանրապետական
երգի տոներին Հայաստանը կլնգա տասնյակ հազարավոր ժողովրդական
երգիչների ձայներից։

Հարցազրույցը վարեց՝ Լ. ԱՆԱՆՅԱՆԸ

# ՄԱՄՈՒԼԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԷՋԵՐ

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԼՐԱԳՐԻ ՀԻՍՆԱՄՅԱԿԸ

1920 թ. վերջին (դեկտեմբերի 29-ին) հիմնադրվեց Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունը: Դա նոր, կարևոր իրադարձություն էր երկրի բանվորական շարժման պատմության մեջ: Պրոլետարիատը ձեռք բերեց հզոր մի ուժ, որը, զինված մարքսիզմ-լենինիզմի տեսությամբ, գլխավորեց բանվորա-դեմոկրատական շարժումը ողջ երկրում, պայքար ծավալելով համաշխարհային նոր պատերազմի վտանգի դեմ:

Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության ստեղծումը լայն արձագանք գտավ աշխատավոր զանգվածների, ինչպես և գործարաններում ու հանքերում գործող հայ բանվորների շրջանում: Չանցած մի քանի տարի, երկրի տարբեր վայրերում, առաջին հերթին՝ Փարիզում, Լիոնում, Մարսելում, կազմակերպվեցին հայ կոմունիստական բջիջներ կամ պրոպագանդայի խմբեր ու խմբակներ, որոնք սկսեցին իրենց շուրջը համախմբել առավել գիտակից ու ակտիվ բանվորներին:

Կոմունիստական գաղափարների պրոպագանդման ու տարածման աշխատանքները հայ բանվորների շրջանում՝ սեփական տպագիր հայերեն օրգանն ունենալու անհրաժեշտություն հարուցեցին: Եվ, ահա, 1924 թվականին, Փարիզում հիմնադրվեց «Բանվոր-Պարիզ» լրագիրը. առաջին իսկ համարից այն ջերմորեն ընդունվեց հայ բանվոր ընթերցողների կողմից:

Ֆրանսահայ բանվորները երեկվա արևմտահայ գյուղացիներն էին՝ անցած եղեռնի արյունոտ ճամփաներով և, բնականաբար, չունեին բանվորական գործունեության փորձ, դասակարգային պայքարի գիտակցություն ու հմտություն: Նրանք օրգանապես կապված չէին տեղական բանվորների և աշխատավորների հետ (տե՛ս Ալ. Մարտունի (Մյասնիկյան), Կուսակցությունները գաղութահայության մեջ, Երևան, 1924, էջ 10): Ավելին. այլազգի նորեկ բանվորների հետ հայերն այդ ժամանակ ո՛չ միայն չէին կարողանում պաշտպանել իրենց շահերը, այլև օբյեկտիվորեն խոչընդոտում էին բանվորական շարժման ընդհանուր գործին: Այդ նկատի առնելով «Յումանիտեն» գրում էր, թե «Աշխատավորներու այս բանակը հանկարծ բերված աշխատանքի շուկան, կրկնապես վընասակար դեր մը կատարելու կոչումն ունի ֆրանսական պրոլետարիատին դեմ: Այս աժան բազուկները ներկա օրավարձերը իջեցնելու պիտի ծառայեն, եթե մեր կազմակերպությունները ուշադրություն չդարձնեն»[1]:

Ուստի և «Բանվոր-Պարիզի» առաջ ծառանում էր մի կարևոր խնդիր՝ հայ աշխատավորների շրջանում արմատավորել բանվորական համերաշխության ու միասնականության գաղափարները, կազմակերպել նրանց և ընդգրկել արհեստակցական միություններում, ներգրավել ընդհանուր բանվորական շարժման ոլորտը:

«Բանվոր-Պարիզի» առաջին համարը լույս տեսավ 1924-ի հունիսի 1-ին, Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության հայկական սեկցիայի («Հայ աշխատանքի խմբի» կամ, ինչպես վերանվանվեց մի փոքր ավելի ուշ՝ «Փարիզի հայ պրոպագանդայի խմբի») ջանքերով, որպես կոմկուսակցության «հայատառ օրգան»: Հնչակյանների «Հայ բանվոր» լրագիրը, երեք համար լույս տեսնելուց հետո, շուտով միացավ «Բանվոր-Պարիզին»: Նրա հրատարակիչների խումբն ամբողջովին անցավ Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության շարքերը: «Բանվոր-Պարիզի» աշխատանքները վարում էր խմբագրական կոլեգիան, որի մեջ տարբեր ժամանակներում եղել են Մարտիկ Տեր-Մարտիրոսյանը, Անուշավան Տեր-Հարությունյանը, Աշոտ Ժամկոչյանը, Գուրգեն Թահմազյանը, Երվանդ Ճյուհերյանը և ուրիշներ:

«Բանվոր-Պարիզը» ծրագրվել էր որպես շաբաթական հրատարակություն, սակայն, ժամանակ առ ժամանակ, խախտվում էր այդ պարբերականությունը, մեծ մասամբ նյութական դժվարությունների հետևանքով: 1925 թվականի ամռանը այն երկու ամսով ընդմիջվեց, այնուհետև հրատարակվեց ևս 7 համար («Նոր շրջան» անունով) և տարեվերջին, 45-րդ համարից հետո, դադարեց: Լրագրի տպաքանակը սկզբում 500 օրինակ էր, ապա բարձրացավ 1.000-ի, որը, եթե համեմատելու լինենք այդ ժամանակահատվածում սփյուռքում հրատարակվող պարբերականների միջին տըպաքանակի հետ, չէր զիջում նյութապես ավելի ապահով վիճակում գտնվող այլ լրագրերի տպաքանակին:

Իր առջև դրած խնդիրները «Բանվոր-Պարիզը» շարադրել է Ո՞րն է մեր ուղին խմբագրականում: Փարիզահայ մթնոլորտը, գրում էր թերթը, բուրժուական է, ազգայնական, կղերամիտ: Այն կղզիացնում է հայ աշխատավորներին նեղ ազգայինի սահմաններում, հեռու է պահում նրանց բանվորական շարժումից, դասակարգային պայքարից: Կղերաբուրժուական շրջանները, շարունակում է լրագիրը, «ուժեղ հակահոսանք մըն են կազմած խորհրդային երկիրներուն դեմ», ձգտում են մեկուսացնել հայ բանվորներին իրենց խորհրդային հայրենիքից: Ելնելով այս ամենից, լրագիրն իր հիմնական խնդիրն է համարում ֆրանսահայ բանվորների դասակարգային գիտակցության մակարդակի բարձրացումը, պրոլետարական պայքարի ընդհանուր գործին նրանց մասնակից դարձնելը: Խմբագրականի վերջում լրագիրը գրում է.

«Միջազգային բանվորությունը, իր արյունոտ փորձառություններով, հարթած է մեր ուղին:

Ռուս պրոլետարիայի հեղափոխությունը, ցուցցած է մեր ճամփան:

Մենք կերթանք հաստատ և հուսալի դեպի ընկածներու և շահագործվածներու ազատագրումը, դեպի բանվորական վերջնական հաղթանակը»[1]:

Սկսած առաջին իսկ համարից, «Բանվոր-Պարիզը» պրոպագանդիստական լայն աշխատանք ծավալեց հայ բանվորների շրջանում, մատչելի ձևով բացատրելով բանվոր-ընթերցողներին դասակարգային հարաբերությունների էությունը, կոչ անելով նրանց կազմակերպվել, մերձենալ ֆրանսիացի բանվորներին, ընդհանուր ճակատ կազմել համատեղ պայքարի համար, հանուն իրենց դասակարգային շահերի: «Բանվոր-Պարիզը» հայ բանվորներին հատկապես զգուշացնում էր ազգայնորեն մեկուսանալու վտանգից, հորդորում նրանց հարգել բանվորական համագործակցության սկըզբունքները, հակակայել աշխատանքի հավելյալ ժամերի կիրառման դեմ, պահպանել 8-ժամյա բանվորական օրը, որ մեծ զոհողությունների գնով նվաճել էր Ֆրանսիայի պրոլետարիատը: Բանն այն է, որ երկրում 1919 թ. օրենքով սահմանված 8-ժամյա աշխատանքային օրը հաճախ խախտվում էր ձեռնարկատերերի կողմից, մանավանդ օտար բանվորների նկատմամբ. այն տևում էր 12—14 ժամ: Չնայած դրան, հայ բանվորների մի մասը, մանավանդ, սկզբնական տարիներին, համաձայնում էր հավելյալ աշխատել, որը, բնականաբար, դժգոհություն էր հարուցում տեղի բանվորության շրջանում: «Ֆրանսահայ բանվորը թող չմոռնա,— այդ առնչությամբ գրում էր լրագիրը,— որ այս երկրին հեղափոխական ավյուն ունեցող աշխատավորությունը կգուրգուրա իր կաթիլ առ կաթիլ շահված նվաճումներուն վրա և չներեր, որ իր դատին դավաճանող բանվորներ անպատիժ շարունակեն արհամարհել այդ նվաճումները: Մեր աշխատավորության ընթացքը ուշադրություն գրաված է և տեղական մամուլի նյութ դարձած»[2]: Լրագիրը զգուշացնում էր, որ բանվորական համերաշխության անհրաժեշտությունը բխում էր ամենից առաջ իրենց իսկ՝ հայ բանվորների շահերից, որովհետև ազգային մեկուսացումը, համագործակցությունից խուսափելը զրկում էին նրանց բանվորական կազմակերպությունների (արհեստակցական միությունների) պաշտպանությունից, հարվածում տեղացի բանվորների շահերին, քանզի նման պարագաներում գործարանատերերն օտար բանվորներին օգտագործում էին որպես պահեստի բանակ, ֆրանսիացի բանվորների արդարացի պահանջները մերժելու համար: Պետք է զգուշանալ, գրում է լրագիրը, այդ դերը կատարելուց:

Բանվորական շարժմանը և, առհասարակ, ֆրանսիական քաղաքական կյանքին հայ աշխատավորության մասնակցությունը ժամանակի հրատապ հարցերից մեկն էր: Հայ լրագրերը բազմիցս անդրադարձել են դրան: Ազգայնական մամուլը պնդում էր, թե ֆրանսահայերը չպետք է մասնակցեն երկրի քաղաքական կյանքին, որ դա կարող է վտանգել հայ գաղթականներին, փակել Ֆրանսիայի դռները նրանց առաջ, առիթ տալ վտարելու հայերին երկրի սահմաններից. նրանք հատկապես ըզգուշացնում էին բանվորական, կոմունիստական շարժմանը մասնակցելուց:

Հայտնի է, թե նման տենդենցներն սկզբուն-

---

1 Մեջբերումը վերցրել ենք «Բանվոր-Պարիզի» 1925-ի փետրվարի 15-ի համարից:

1 «Բ.-Պ.», 1924, 1 հունիսի:

2 «Բ.-Պ.», 1925, 22 փետրվարի:

գրում է, որ նման մի բազմամարդ հավաք «...շատ հազվադեպ է Փարիզի մեջ և կհաստկանշե այն ջերմ զգացումը, զոր գաղթական հայ աշխատավորությունը ցույց կուտա մեր երկրին և անոր իրավակարգերուն հանդեպ»[1]:

Հաճախ Հայաստանին վերաբերող նյութեր էին հրապարակվում նաև պետական ու հասարակական խոշոր գործիչների՝ Ալ. Մյասնիկյանի, Ար. Երզնկյանի, Աշ. Հովհաննիսյանի, Լուկաշինի և այլոց հեղինակությամբ: Առհասարակ սփյուռքահայ աշխատավորության շրջանում մեծ էր Հայաստանի կառավարության ու կոմունիստական կուսակցության ղեկավարների հեղինակությունը. նրանք մարմնավորում էին հայ ժողովրդի ձեռք բերած պետականության գաղափարը: Դա հատկապես երևաց այն օրերին, երբ Ալ. Մյասնիկյանի ողբերգական մահվան գույժը հասավ արտասահման: Սփյուռքահայ աշխատավորության ապրած վիշտն արտահայտվեց մամուլում, մասնավորապես «Բանվոր-Պարիզի» էջերում:

Խոշոր նշանակություն տալով սփյուռք-հայրենիք կապի ամրացմանն ու խորացմանը, լայնորեն պրոպագանդելով Հայաստանի երիտասարդ հանրապետության նվաճումները, «Բանվոր-Պարիզը» գտնում էր, որ հայ գաղութների աշխատավորությունը պետք է առաջնորդվի հայրենիքում հաղթանակած քաղաքական-հասարակական, պրոլետարական հեղափոխության գաղափարներով:

Ինչպես հայտնի է, քսանական թվականների առաջին տարիներին դեռևս ուժեղ էր հավատը արևմտյան տերությունների, նրանց «հայանպաստ» քաղաքականության նկատմամբ: Արևմուտքի իմպերիալիստական պետությունների հակասովետական լայն պրոպագանդայով սնվող այդ տրամադրությունները հարուցում էին սփյուռքահայ աշխատավորության դժգոհությունը: Արտահայտելով այդ բողոքը արևմտյան օրիենտացիային հետևող հայ մտավորականության հանդեպ՝ «Բանվոր-Պարիզը» գրում էր, որ սփյուռքի «մտավորական կոչված ղեկավար հատվածը», քիչ բացառությամբ, «անտարբեր է Հայաստանի հանդեպ», նույնիսկ դեմ է Սովետական Հայաստանին եթե ոչ երևութապես, ապա ներքնապես, քանի որ այդ հատվածը կազմող անձինք «կրթությամբ և ավանդությամբ հավատացողներ են Արևմտյան ազգերու «ասպետականության», «մեծության» և «գերազանցության»[2], հետևաբար չեն կարող ղեկավարել, ճիշտ ուղիով տանել սփյուռքահայ աշխատավոր զանգվածներին:

«Բանվոր-Պարիզի» նման բնորոշման հիմնական նպատակն էր այս և մի շարք այլ նյութերով ընդհանրապես կողմնորոշել ֆրանսահայ աշխատավորությանը, վստահություն ներշնչել սեփական ուժերի հանդեպ և, ըստ էության, ուղղված էր ոչ թե ընդհանրապես սփյուռքահայ մտավորականության դեմ, որի մի ստվար մասը, հատկապես երիտասարդությունը, կանգնած էր Սովետական Հայաստանի կողմնակիցների ու պաշտպանների դիրքերում, այլ արևմտյան օրիենտացիայի ջատագովների և, առաջին հերթին՝ դաշնակցության դեմ:

Հիմնականում «Բանվոր-Պարիզը» պայքարել է դաշնակցության, նրա մամուլի, մասնավորապես, «Դրոշակ» (Փարիզ), «Հայրենիք» (Բոստոն) և «Տարագիր» (Մարսել) լրագրերի դեմ, նաև դաշնակցական մամուլի կողմից շրջանառության մեջ դրված այն թեզի դեմ, իբր իրենք Սովետական Հայաստանի կարգերի հանդեպ միայն լոյալ օպոզիցիայի դիրքերում են: Մերկացնելով դաշնակցականների այդ կեղծ դրույթը, լրագիրը ցույց է տալիս, թե ինչպես «լոյալ օպոզիցիայի» վարագույրի հետևից նույն այդ օրերին դաշնակցությունը Ֆրանսիայում ձեռք էր մեկնում ռուսական միապետականների, ադրբեջանական մուսավաթականների ու վրաց մենշևիկների մնացուկներին և նրանց հետ իմպերիալիստական այն ուժերին, որոնք կատաղի պայքար էին մղում սովետական իշխանության դեմ: Լրագիրը պայքարում էր նաև հայ աշխատավորների արտագաղթի դեմ. արտագաղթ դեպի Հյուսիսային և Հարավային Ամերիկաներ, որ քարոզում, կազմակերպում էին դաշնակցականները, խափանելու համար հայության ներգաղթը «Կարմիր հայրենիք», պրոպագանդելով հայ աշխատավորությանը չմիանալ կոմունիստներին, «...որովհետև Ֆրանսիայի դռները հայերու առջև գոցվելու պատճառ կդառնան եղեր», հայ կոմունիստներին բանսարկում էին իբրև «բոլշևիկ խռովարարներ», «Մոսկվայեն ուղարկված գործիչներ» և այլն: «Բանվոր-Պարիզը» հետևողականորեն մերկացնում էր դաշնակցականների այս բոլոր հերյուրանքները, հորդորելով Ֆրանսիայի, Սիրիայի, Եգիպտոսի և այլ երկրների հայ գաղթականներին՝ չմիանալ իմպերիալիստներին ու նրանց կամակատար դաշնակցականներին, չծառայել նրանց ընդդեմ տեղացի ժողովուրդների, այլ լինել աշխատավորների հետ, սատարել գաղութային ճնշման տակ գտնվող ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարին:

«Բանվոր-Պարիզը» պաշտպանում է ՀՕԿ-ի (Հայաստանի օգնության կոմիտե) գործունեությունը, պրոպագանդում նրա ձեռնարկումները: Այդ կազմակերպությունը նոր էր հիմնադրվում Ֆրանսիայի հայաշատ վայրերում և աստիճանաբար ընդլայնում էր իր գործունեությունը: Լրագիրը մասսայականացնում էր այդ, վերհանում դրա դերն ու նշանակությունը, պայքարում դաշնակցականների տարածած այն բանսարկությունների դեմ, թե իբր ՀՕԿ-ին անդամակցելը կոմունիստական շարքերի մեջ մտնել է նշանակում, և կարող է վնասել ու կասկածելի դարձնել հայերին ֆրանսիական կառավարության աչքում և այլն:

[1] «Բ.-Պ.», 1924, 6 դեկտեմբերի:

[2] «Բ.-Պ.», 1925, 1 փետրվարի:



«Բանվոր-Պարիզը» մեծ կարևորություն էր տալիս միջազգային հարցերի լուսաբանմանը, բայց, որովհետև լույս էր տեսնում շաբաթը, տասն օրը կամ երկու շաբաթը մեկ, հնարավորություն չուներ օր-օրի հետևելու քաղաքական իրադարձությունների զարգացմանը՝ աշխարհի տարբեր մասերում: Միջազգային կյանքը լրագիրը ներկայացնում էր կարճ լուրերով, ավելի լայն տեղ հատկացնելով դասակարգային ու ազգային-ազատագրական պայքարին: «Բանվոր-Պարիզը» համարձակ քննադատում էր մասնավորապես ֆրանսիական իմպերիալիզմի քաղաքականությունը ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները ճնշելու գործում, պաշտպանելով սեփական ճակատագիրը տնօրինելու նրանց սրբազան իրավունքը: Լրագիրն իր ձայնն է բարձրացրել նաև ընդդեմ ֆաշիզմի, կոչ անելով բանվորներին՝ կազմակերպել ու պայքարել նրա բոլոր դրսևորումների դեմ:

«Բանվոր-Պարիզը» դադարեց լույս տեսնել 1925 թվականի ավարտին: Դեկտեմբերի 8-ի համարում, որը եղավ և վերջինը, խմբագրությունը հայտնեց իր ընթերցողներին, թե հաջորդ տարվա հունվարից լույս է տեսնելու կոմունիստական նոր օրգան: Այդ «Վերելք» հանդեսն էր, որը և եկավ շարունակելու «Բանվոր-Պարիզի» գործը:

Իր գոյության մեկ և կես տարվա ընթացքում «Բանվոր-Պարիզը», չնայած իր անցած ուղու դժվարություններին, զգալի աշխատանք ծավալեց, ինչպես գրում էր հետագայում Միսաք Մանուշյանի «Զանգուն»՝ «ուշագրավ դեր կատարեց ուժերու համախմբման տեսակետով»[1] ֆրանսահայ աշխատավորների շրջանում, հանդիսանալով նրանց մտքերի ու շահերի արտահայտիչը և ջերմ ընդունելություն գտնելով ընթերցողների շրջանում:

Մ. Ա. ԲԱԲԼՈՅԱՆ
Բանասիրական գիտությունների
թեկնածու

[1] «Զանգու», 1936, № 42:

«Հետքերը», կապված է գալակտիկաների խմբերի ու կույտերի անկայունության հետ, որի վրա առաջինն ուշադրություն դարձրեց Վիկտոր Համազասպովիչը: Շատ կարևոր է նրա հայտնագործած գալակտիկաների կորիզների ակտիվության երևույթը:

Համբարձումյանը գտնում է, որ աստղառաջացման պրոցեսների նկարագրման համար անհրաժեշտ կլինի ընդհանրացնել ֆիզիկայի հիմնարար որոշ օրենքների ժամանակակից ձևակերպումը, ինչպես, օրինակ՝ պտտողական մոմենտի պահպանման, կամ նույնիսկ՝ էներգիայի պահպանման օրենքը: Նա հիշեցնում է, որ ֆիզիկան առաջին անգամը չէ, որ հանդիպում է այդ օրենքի խախտմանը: Էներգիայի միայն որոշակի ձևերն էին հայտնի: Դա ստիպել է ընդհանրացնել էներգիայի պահպանման օրենքը, տարածելով այն էներգիայի՝ նախկինում անհայտ տեսակների վրա, որը հանգեցրել է հենց էներգիայի հասկացության զարգացմանը:

Ինչ վերաբերում է գալակտիկաների կորիզներին, ապա Վ. Համբարձումյանը գտնում է, որ դրանցում պետք է գոյություն ունենան նախաաստղային նյութի փոքր ծավալ զբաղեցնող հսկայական զանգվածներ: Նախաաստղային այդ մարմինները ի վիճակի են տրոհվելու— մեծ արագություններով հեռանալով միմյանցից՝ նյութի հսկայական զանգվածներ արտավիժելու, որն ուղեկցվում է մեծ քանակությամբ էներգիայի ճառագայթմամբ՝ տեսանելի և ռադիոալիքներում: Դրա համար պետք է վիթխարի պոտենցիալ էներգիա ունենան: Կորիզի պայթյունը կարող է գալակտիկայի մեջ աստղային նոր ենթահամակարգեր ստեղծել, կամ, նույնիսկ, նոր գալակտիկայի ծնունդ տալ: Զարգացնելով այս կոնցեպցիան՝ ականավոր տիեզերագետը եզրակացրեց, որ կորիզներում տեղի ունեցող պայթյունների հետևանքով կարող են առաջանալ նաև գալակտիկաների խմբեր ու կույտեր: Դիտումներն անմիջականորեն ցույց են տալիս, որ կորիզները կարող են էներգիայի մեծ պաշարներ ունենալ և պահպանել դրանք մինչև հերթական պայթյունը: Չի կարելի լրիվ ժխտված համարել այն հնարավորությունը, թե կորիզների այս հատկությունները կարելի կլինի բացատրել տեսական ֆիզիկայի հայտնի օրենքների հիման վրա: Բայց, եթե պարզվի, որ այդ անհնար է, ապա անխուսափելի կդառնան տեսական ֆիզիկայի հայտնի օրենքների վերանայումն ու ընդհանրացումը: Այդպիսով հնարավորությունները ո՛չ միայն շատ հավանական են թվում, գտնում է Վ. Հ. Համբարձումյանը, այլև զարմանք չեն պատճառում: Կասկածից վեր է, որ ֆիզիկայի հիմնական օրենքների այժմ ընդունված ձևը վերջնական չէ:

Տիեզերագիտության փիլիսոփայության հարցերը ժողովածուն խիստ արժեքավոր է ո՛չ միայն աստղագիտությամբ զբաղվող մասնագետների, այլև ընդհանրապես հետաքրքրվողների համար: Դժվար է գերագնահատել գրախոսվող ժողովածուի արժեքը հատկապես փիլիսոփաների համար:

Ժողովածուում ամփոփված զեկուցումների ու հոդվածների զգալի մասը գրվել է ոչ աստղաֆիզիկոսների համար: Ժողովածուի խմբագիր պրոֆ. Լ. Վ. Միրզոյանի ծանոթագրություններն ավելի մատչելի են դարձնում գիրքը ոչ մասնագետի համար:

Հ. Մ. ԹՈՎՄԱՍՅԱՆ
Ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտոր



Адрес редакции: 375033 Ереван- 33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 04000 Պատվեր 1459 Թղթի չափսը $70\times108^1/_{16}$: Տիրաժ 13.500 Գինը 20 կոպ.

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 12/VIII-1974 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Թամանյան փող. № 28:




# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Կուսակցական կյանքի նորմաների և կուսակցական ղեկավարման սկզբունքների մասին: *«Հայաստան» հրատ., 1974:*

ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ.— Լենինի հետ *(Վ. Ի. Լենինի մահվան 50-ամյակի առթիվ): Երևան, «Գիտելիք» ընկ. հրատ., 1974:*

ՈՒՏԿԻՆ Է. Ա.— ՍՍՀՄ-ի և զարգացող երկրների տնտեսական համագործակցությունը: *Մ.,* «Экономика» *հրատ., 1974:*

ՌՈՒՄՅԱՆՑԵՎ Ա. Ա.— Գիտական հետազոտությունների տնտեսական արդյունավետությունը: *Մ.,* «Экономика» *հրատ., 1974:*

Սովետական իշխանության դեկրետները, *հ. VI: Կազմել են ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի և ՍՍՀՄ ԳԱ պատմության ինստիտուտները: Մ.,* «Политиздат», *1973:*

*Այստեղ ամփոփված են Համամիութենական կենտրոնական գործադիր կոմիտեի, Ժողկոմխորհի և ՌՍՖՍՀ Պաշտպանության խորհրդի օրենսդրական 372 փաստաթղթեր: Օրենքների բնօրինակների հետ մեկտեղ գրքում զետեղված են նաև դեկրետների և որոշումների նախագծերը՝ Վ. Ի. Լենինի շտկումներով:*

Մտերիմ խոսքեր— *Հավաքեց և կազմեց Վարդունին: «Հայաստան» հրատ., 1974:*

*Գրքույկում զետեղված են մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, հեղափոխական ու պետական գործիչների, գրողների, արվեստագետների, գիտնականների մտքերն ու ասույթները:*

Աշխարհի երկրները: *Քաղաքական-տնտեսական համառոտ տեղեկագիր: Մ.,* «Политиздат», *1973:*

Մերձավոր և Միջին Արևելքի երկրները և ժողովուրդները: *Արաբական երկրներ: ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1974:*

ԳՈՒԲԱՐՅՈՎ Վ. Ս.— Կոպեռնիկոսից մինչև «Կոպեռնիկոս»: *Մ.,* «Политиздат», *1973:*

*Լեհական Տորուն քաղաքում, աշխարհի արեգակնակենտրոն համակարգի ստեղծող Ն. Կոպեռնիկոսի ծննդավայրում, լեհ գիտնականները պատրաստել են «Կոպեռնիկոս—500» արբանյակը. սովետական տիեզերակայանից «Ինտերկոսմոս» հրթիռով այն արձակվեց երկինք, արեգակի ուսումնասիրության նպատակով:*

ՄԽԻԹԱՐՅԱՆ Գ. Ն.— Սոցիոլոգիական ուսմունքների պատմություն: *Երկրորդ պրակ: Հունաստան և Հռոմ: Ուսումնական օժանդակ ձեռնարկ: Երևան, պետհամալսարանի հրատ., 1974:*

Հայ ժողովրդի պատմություն: *Բազմահատորյակի հինգերորդ հատոր: ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1974:*

*Հայ ժողովրդի պատմության բազմահատորյակի այս հատորում ամփոփված են 1801—1870 թթ. պատմական իրադարձությունները:*

ԱՍԼԱՆՅԱՆ Ջ.— Կյանք, որ նման է լեգենդի *(վավերագրական վիպակ): «Հայաստան» հրատ., 1974:*

*Գիրքը նվիրված է անվեհեր բոլշևիկ, գեներալ Քրիստափոր Նիկոլայի Ալավերդյանի (1895—1942) կյանքին ու հեղափոխական գործունեությանը:*

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## «ԵՐԿԱՐԱԿՅԱՑ ՄԵՏԱՂՆԵՐ»

*Մոսկովյան գիտնականներ Ն. Տոմաշովը և Գ. Չեռնովը հայտնագործել են կոռոզիան կասեցնող նոր մեթոդ. համաձուլվածքի մեջ մտցնելով որոշ մետաղների չնչին քանակություն՝ մակերեսի վրա առաջանում է քայքայումից պահպանող շերտ: Կոռոզիայի դիմադրողականությունն աճում է տասնյակ, հարյուր, նույնիսկ հազար անգամ: Տիտանի և ոչ մեծ քանակությամբ պալադիումի համաձուլվածքին չի կարող վնասել ծծմբաթթվի խոնացված լուծույթը: Պալադիումի ավելացումը քրոմական պողպատին բարձրացնում է և դրա դիմացկունությունը: Նման և այլ համաձուլվածքները դեռևս ոչ «հավիտենական», բայց երկարակյաց են:*

## ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԿՏՐՈՒՄ Է ԲԵՏՈՆԸ

*Խարկովի «Արդշիննախագիծ» գիտահետազոտական ինստիտուտում մշակվել է բետոնի էլեկտրաաղեղային հալեցման արդյունավետ եղանակ:*

*Էլեկտրական աղեղը, ներազդելով բետոնի վրա, ստեղծում է հեղուկ վաննա, որի մեջ մտցվում է մետաղափոշի կամ լար: Այդ անընդհատ ներմուծվող հավելումը խիստ ուժեղացնում է ջերմահաղորդականությունը, հետևապես՝ բետոնի հալվելը: Այժմ բետոնի կտրման, հալման և զոդման համար կան էլեկտրական աղեղը արդյունավետ օգտագործելու լայն հնարավորություններ:*

## ՎԱԿՈՒՈՒՄԸ ՍՏՈՒԳՈՒՄ Է ՊԱՀԱԾՈՆԵՐԸ

*Լեհական մասնագետներն առաջարկել են պահածոների ստուգման յուրատեսակ մեթոդ՝ առանց կափարիչները բացելու: Ստուգվող պահածոները տեղադրվում են նոսրացված օդով խցիկում. այն բանկաները, որոնցում մթերքը նույնիսկ աննշան չափով սկսել է փչանալ, վայրկենապես բացվում են: Բարձրորակ պահածոները վակուումի մեջ արտաքին տեսքը չեն փոխում:*

*Պահածոների վակուումով ստուգման այս ապարատը լեհական մասնագետներն արդեն պատենտավորել են մի շարք երկրներում:*

## ԹԱՓՈՆ ՉԻ ԼԻՆԻ

*Մինչև այժմ մեկ խորանարդ մետր փայտակեղևը ԳԴՀ-ի թղթի ցելյուլոզայի արդյունաբերության թափոնն էր: Այսուհետև այդ «թափոնի» համար գտնվել է արդյունավետ կիրառում: Պարզվել է, որ եթե ջերմոցների հողը ծածկեն փայտակեղևի փոշու շերտով, ապա վարունգը, պոմիդորը և այլ բանջարեղեններ ավելի արագ կհասունանան: Բացի այդ, փայտակեղևը խոչընդոտում է մոլախոտերի բազմացմանը, որը և հեշտացնում է բույսերի աճը:*

## ԿԱՀՈՒՅՔ ԹՂԹԻՑ

*Գործածական փայտանյութի թանկանալը կալիֆորնիական ֆիրմաներից մեկին հարկադրեց մշակելու մակույատուրան շինանյութի վերածելու պրոցեսը: Ֆիրմայի արտադրանքը բազմագույն խողովակաձև ձողիկներ ու սալիկներ են, որոնք պատրաստվել են լրագրային թղթից, բայց ամրությամբ չեն զիջում փայտանյութին: Պլաստմասսայե ամրակների օգնությամբ միացնելով այդ մասերը, գնորդն իր ճաշակով կարող է պատրաստել էժան և հարմարավետ կահույք:*

## ԱՂՄԿԱՉԱՓ

*— Ծվեդիայում թողարկվող գրպանի աղմկաչափը որոշում է սարքը կրողի ստացած ընդհանուր աղմուկի չափը՝ մեկ շաբաթում: Այն գրանցում է 80—120 դեցիբել ձայները (80 դեցիբել ուժի աղմուկը ընդունված է աշխատանքի անվտանգության ներքին սահմանը,* **երթևեկության** *ունեցող փողոցներին,* **120-ը՝ ռեակտիվ** *շարժիչի դղրդյունին):*